Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ XX ՏԱՐԻՆ

№ 22 (100)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԵՐԵՎԱՆ—1940

*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 22 (100)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՔՍԱՆ ՏԱՐԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Նոյեմբերի 29-ին հայ ժողովուրդը հրճվանքով է դիմավորում Հայաստանում սովետական իշխանության հաստատման քսանամյակը։*

*Հայաստանում սովետական իշխանության հաստատման քսան տարին տոնվում է այն շրջանում, երբ իմպերիալիստական երկրորդ պատերազմի բոցերի մեջ են ընդգրկված տասնյակ ժողովուրդներ, ամբողջ աշխարհի բնակչության զգալի մասը։*

*Երկրորդ իմպերիալիստական պատերազմի շրջանում օկուպացիայի են ենթարկվել, կույ են գնացել ու կորցրել են իրենց ինքնուրույնությունը՝ փոքրիկ, խաբված ու անօգնական երկրներից Հաբեշստանը, Ավստրիան, Չեխոսլովակիան, Ալբանիան, Լեհաստանը, Նորվեգիան, Դանիան, Բելգիան, Հոլանդիան, Սիամը և այլն։ Նրանց դարձ-*

րել են իմպերիալիստական գիշատիչների կամակատարները։

Իմպերիալիստական գիշատիչ աշխարհին դեմ հանդիման կանգնած է հզոր ու մեծ Սովետական Միությունը՝ ամբողջ աշխատավորության ու փոքրիկ ժողովուրդներին նոր կյանք տվողը։ Դրա փայլուն ապացույցն է իմպերիալիստական երկրորդ պատերազմի շրջանում Լատվիայի, Լիտվայի, Էստոնիայի աշխատավորների ազատագրումը կապիտալիստական ու կալվածատիրական դահիճների ձեռքից և սովետական իշխանության հաստատվելն այդ երկրներում, Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ժողովուրդների ազատագրությունը և նրանց ընդգրկումն Ուկրաինական ու Բելոռուսական միութենական ռեսպուբլիկաների մեջ, Բեսարաբիայի ու Հյուսիսային Բուկովինայի ազատագրումն ու միացումը Մոլդավական Սոցիալիստական Ռեսպուբլիկային և ազատագրված ժողովուրդների ստեղծագործական կյանքի համար ստեղծված պայմանները։

Սովետական Միության փոքրիկ ժողովուրդների տնտեսական, քաղաքական, կուլտուրայի ու արվեստի զարգացման փայլուն օրինակը ոգեշնչում է ՍՍՌ Միության մեջ նոր մտած մեր եղբայրական ժողովուրդնե-



րին՝ արագ թափով վերակառուցելու իրենց նոր ու ազատ ստեղծագործական կյանքը։

Նրանք ժողովուրդների հայր մեծ Ստալինին ուղղած նամակներում ու ողջույններում արտահայտում են իրենց նվիրվածությունը Լենինի-Ստալինի պարտիայի մեծ գործին, անսահման սերը մեծ Ստալինին ու ցանկություն են հայտնում նրա ղեկավարությամբ գնալու դեպի նորանոր հաղթանակներ։

Դարերի ընթացքում ճնշված, թալանի ենթարկված ու կեղեքված հայ ժողովուրդը ՍՍՌ Միության ժողովուրդների մեծ ընտանիքում վերածնվել ու զարգացել է. նա ուրախալի, երջանիկ ու բերկրալի կյանքով է դիմավորում իր հարազատ Սովետական իշխանության քսանամյակը։

Հայ ժողովրդի անցած այս քսան տարվա կյանքը փայլուն օրինակ է բոլոր ճնշված, կեղեքված ու տանջված ժողովուրդներին, որոնք տառապում են իմպերիալիստական երկրների ծանր լծի տակ։

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՆՑՅԱԼԸ

Բավական է հիշել վերջին հազար տարվա ընթացքում հայ ժողովրդի անցած ուղին։ Այդ հազար տարվա պատմությունը ցույց է տալիս, որ հայ ժողովուրդը հրի ու սրի,

թալանի ու կողոպուտի է ենթարկվել և՛ սելջուկների, և՛ մոնղոլների, և՛ օսմանների, և՛ պարսիկների, և՛ ռուսական ցարիզմի կողմից։ Հայաստանին տիրելու համար մղած պատերազմներում և՛ հաղթողները և՛ պարտվողները՝ յուրաքանչյուրն իր հերթին կողոպտել են հայ ժողովրդին։

Բավական է հիշել միայն 19-րդ դարում հայ աշխատավորության քաշած տառապանքները։ Տասնիններորդ դարից Հայաստանը բաժանված է եղել Ռուսաստանի և սուլթանական Թյուրքիայի միջև և երկու պետությունները՝ այդ հարուստ պատառի համար պատերազմելով իրար դեմ, աղետ ու բռնություն էին թափում հայ ժողովրդի գլխին։ Ամեն մեկն ուզում էր մենակ ինքը տիրել հայ ժողովրդի հարստությանն ու նրա արգավանդ հողին։

Թյուրքիայի սուլթան Աբդուլ Համիդը որոշել էր «վերջ տալ հայկական հարցին, վերջ տալով հայերին»։ Խաղաղ, իր քրտինքով ապրող աշխատավոր ժողովրդին սկսեցին բնաջնջել։ Միայն 1894—96 թ. թ. Թյուրքահայաստանում բնաջնջվեցին հազարավոր հայկական գյուղեր, սպանվեց և խեղանդամ արվեց մինչև 150.000 մարդ։

Համաշխարհային պատերազմի ժամանակ Թյուրքիայում սպանված է եղել մոտ 600



հազար հայ։ Հարյուր հազարավոր մարդիկ ստիպված էին թողնել երկիրը, Թյուրքահայաստանը դարձել էր անմարդաբնակ։

Ռուսական ցարիզմը սուլթանական Թյուրքիայից պակաս չէր մտահոգված «լուծելու» հայկական հարցը։ Ռուսական ցարիզմն իր մինիստր Լոբանով— Ռոստովսկու բերանով լկտիաբար հայտարարել էր, որ «Հայաստանը մեզ հարկավոր է առանց հայերի»։ Այդ երբեք ռուս մեծ ժողովրդի ցանկությունը չէր, այլ մի խումբ ռազմաֆեոդալական գիշատիչ իշխողների վայրագ ցանկությունն էր։

Քիչ չեն օգտագործել հայ ժողովրդին՝ իմպերիալիստական տարբեր պետությունները՝ իրենց հակառակորդների վրա ճնշում գործ դնելու նպատակով։ Նրանք պայքարի են հանել հայ ժողովրդին ազատության խոստում տալով նրան, սակայն իրենց նպատակին հասնելուց հետո թողել են նրան բախտի քմահաճույքին, հաղթողների, բռնավորների կրնկի տակ։

Այդպես է վարվել ցարական Ռուսաստանը, ոտքի հանելով հայ ժողովրդին Թյուրքիայի դեմ, այդպես է վարվել անգլիական կառավարությունը, պայքարի հանելով նրան Թյուրքիայի դեմ՝ ճնշում գործ դնելու համար Ռուսաստանի վրա։ Այդպես է վարվել Ֆրանսիան 1919 թ., ոտքի հանելով

հայերին Թյուրքիայի դեմ, իսկ վերջում՝ թողնելով սուլթանական Թյուրքիայի քմահաճույքին, որը ոչնչացրեց տասնյակ հազարավոր հայեր։

Հայ ժողովրդի տառապանքների մասին «Թուրքահայաստանի մասին» 1917 թ. գրած իր հոդվածում ընկեր ՍՏԱԼԻՆԸ հետևյալն է ասում.

> «Թուրքահայաստանը, թվում է միակ երկիրն է, որ «պատերազմի իրավունքով» գրավված է Ռուսաստանի կողմից։ Սա իսկական «դրախտավայր» է, որ երկար տարիներ եղել է (և շարունակում է լինել) Արևմուտքի դիվանագիտական ագահ ակնկալությունների և Արևելքի վարչական արյունոտ մարզանքների առարկա։ Մի կողմից հայերի ջարդեր և կոտորածներ, մյուս կողմից իբրև նոր կոտորածի քողարկում բոլոր երկրների դիվանագետների փարիսեցիական միջամտություն. հետևանքը — արյունոտված, խաբված և ստրկացված Հայաստան, — ո՞ւմ հայտնի չեն «քաղաքակրթված» պետությունների դիվանագիտական սխրագործությունների այդ «սովորական» պատկերները» («Правда» № 227, 23 հունվարի 1918 թ. (31 դեկտեմբերի 1917 թ.)։



Նույն դաժան բախտին էր արժանացել հայ ժողովուրդը, հակահեղափոխական ազգայնական բուրժուազիայի, նրա ստոր խմբապետների՝ դաշնակցականների տիրապետության օրոք։ 1918 թվին, երբ բախտի հեգնանքով, որոշ ժամանակ Հայաստանում իշխանությունն անցել էր նրանց ձեռքը, նրանք իմպերիալիստների ձեռքին գործիք դարձած, պատերազմներ վարեցին Թյուրքիայի, Վրաստանի և Ադրբեջանի հետ, պրովոկացիայի ենթարկելով եղբայրական ժողովուրդներին, կազմակերպեցին ազգամիջյան կոտորածներ ու ջարդեր, ավերեցին ու քայքայեցին ժողովրդական տնտեսությունն ու բնաջինջ արին բնակչության մի երրորդ մասը։

«Հայաստանը դաշնակների օրոք որբերի երկիր էր, արցունքի երկիր, աղքատության ու վայրենի կամայականության երկիր», ասում է ընկեր Միկոյանը։ (Երևանի Ստալինյան օկրուգի ընտրողների ժողովում արտասանած ճառից)։

Իմպերիալիստների այդ զազրելի գործակալները՝ կատարելով իրենց տերերի կամքը, ձեռք-ձեռքի տված ցարական գեներալներ՝ Վրանգելի ու Դենիկինի հետ, պատերազմում էին նաև Սովետական իշխանության դեմ, ստիպում ու բռնություն էին գործ դնում Հայաստանի աշխատավորու-

թյան վրա, որպեսզի պայքարի հանեն սովետական իշխանության դեմ, Հայաստանն անջատեն սովետական մեծ երկրից ու ռուս մեծ ժողովրդից, դարձնեն իմպերիալիստական պետությունների գաղութ։

Հայ աշխատավորությունը տարիներ շարունակ համառ պայքար էր մղում՝ ցարիզմի և սուլթանիզմի կրնկի տակից, դաշնակցականների վայրագություններից ազատագրվելու, իր բախտին տնօրինողը դառնալու համար։

Հայ ժողովրդի մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը հարյուր տարի առաջ ողբում էր հայ ժողովրդի բախտն ու տենչում հայրենիքի ազատագրումը.

...Յարաբ կտեսնե՞մ ախ, ես մեկ օր էլ,
Մեր սուրբ երկիրը թշնամուց ազատիլ։
Էն ի՞նչ շունչ կըլնի, որ էս նոր հոգին
Փչի, վեր կացնի քնից մեր ազգին.
Էն ի՞նչ ձեռք կըլնի, որ մեր աշխարքին
Էլ եդ սիրտ տա ու կանգնեցնի կրկին։
Ախ, ես էն ձեռքին կյանքս ղուրբան
կանեմ,
Էն կոխած հողին երեսս կքսեմ,
Ապրիմ, իմ արինս նրան մատաղ կանեմ,
Մեռնիմ, հողիցն էլ միշտ նրան
կօրհնեմ։



Այն ձեռքը, որը պետք է ազատեր Հայաստանը, որի մասին խոսում է Խ. Աբովյանը, երազում ու կյանքն էր մատաղ անում, այն ձեռքն է Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ Ռևոլյուցիան, սովետական մեծ ժողովուրդը, նրա հանճարեղ առաջնորդներ՝ Լենինն ու Ստալինը։ Նրանք են, որ ամեն օր հոգ են տանում ժողովուրդների ուրախ ու երջանիկ կյանքի համար։

«Այժմ բոլորի համար պարզ է,— գրում էր հայ ժողովրդի մեծ բարեկամ ու ազատարար ընկեր Ստալինը 1917 թ.— որ Ռուսաստանի ժողովուրդների, մանավանդ հայ ժողովրդի բախտը սերտորեն կապված է Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի բախտի հետ»։

Հայ ժողովրդի պայքարն ու հաղթանակները 20-րդ դարի սկզբից կապված են ժողովուրդների մեծ առաջնորդ, հայ ժողովրդի ամենամտերիմ բարեկամ մեծ Ստալինի անվան հետ, նրա մերձավոր զինակիցներ՝ հայ ժողովրդի արժանավոր զավակներ՝ Ս. Սպանդարյանի, Ս. Շահումյանի, Ա. Միկոյանի անվան հետ։

Սովետական մեծ ժողովուրդների հարազատ ընտանիքում ծաղկում ու բարգավաճում է Հայաստանը։ Նրա խաղաղ կյանքն ու աշխատանքը, ինչպես և ՍՍՌՄ-ի մյուս

ժողովուրդների խաղաղ կյանքն ապահովված է ՍՍՌՄ-ի հզոր ու հաղթանակող Կարմիր Բանակով:

Հայ ժողովուրդն իր ազատագրության ճամբան գտել է և իր ձեռքն է վերցրել իր կյանքի տնօրինությունը, պայքարի է դուրս եկել Լենինի-Ստալինի մեծ ազատարար դրոշակի տակ:

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ՍԿԻԶԲԸ

Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ Ռեվոլյուցիան 1917 թ. հոկտեմբերին նոր ուղի բաց արեց դարերով ճնշված բոլոր ազգությունների ազատագրման համար: Ոգեշնչված Հոկտեմբերյան Մեծ Ռևոլյուցիայի հաղթանակներով, Հայաստանի աշխատավորությունը, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, բոլշևիկների պարտիայի ու նրա հանճարեղ առաջնորդներ Լենինի ու Ստալինի, նրանց զինակիցներ՝ Օրջոնիկիձեի, Կիրովի անմիջական գլխավորությամբ, 1920 թ. նոյեմբերի 29-ին ռևոլյուցիոն հարվածով դեն շպրտեց հայ ազգայնական բուրժուազիայի ու նրա պարտիայի՝ դաշնակցականների նողկալի տիրապետությունը և հաստատեց իր հարազատ սովետական իշխանությունը:

Հոկտեմբերյան Մեծ Ռևոլյուցիան փոք-



րիկ ժողովուրդների համար բաց արեց պատմության նոր, փայլուն էջ:

Դրվեց դարերի ընթացքում հալածված ժողովրդի ուրախ ու երջանիկ կյանքի հիմքը:

Ընկեր Ստալինը 1920 թվի դեկտեմբերի 4-ին, ողջունելով Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում, գրեց.

> «Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի ու դաշնակների գթասրտությամբ սովի, քայքայման և գաղթի մատնված Հայաստանը, բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը, այժմ ձեռք է բերել իր ազատությունը նրանով, որ իրեն հայտարարել է սովետական երկիր»:

Քսան տարվա ընթացքում նախկին ցարական գաղութ, իմպերիալիստական պատերազմից ու դաշնակցական ավանտյուրայից ավերված Հայաստանի տնտեսությունը վերականգնվեց, աճեց ու զարգացավ կուլտուրան, գիտությունն ու արվեստը, ստեղծվեց ժողովրդի ստեղծագործության բուռն վերելք: Քսան տարվա ընթացքում, ՍՍՌ Միության մեծ ընտանիքում և նրա օգնությամբ, Հայաստանը փոխել է իր դեմքը:

Սովետական կառավարությունը այս անցած քսան տարվա ընթացքում Հայաստանում ժողովրդական տնտեսության վերա-

կանգնման համար ներդրել է 2.281 միլիոն ռուբլի։

Երկրի ինդուստրացման հաջողությունները (խոշոր արդյունաբերական ձեռնարկությունները, էլեկտրական, մեխանիկական, մետաղամշակման, քիմիական, տեքստիլ, կոնսերվի, պղնձի և այլ), ծաղկող գյուղատնտեսությունը, միլիոնատեր կոլխոզները, ունևոր կյանքով ապրող փայլուն հաղթանակների պանծալի ցուցանիշներն են։ Այս հաջողությունները ձեռք են բերված շնորհիվ նրան, որ ճիշտ կերպով կյանքում կենսագործված է Լենինի-Ստալինի մեծ պարտիայի ազգային քաղաքականությունը։

Մեր հերոսական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները, ունևոր կյանքը հանգիստ չէր տալիս իմպերիալիստներին և նրանց ագենտ բուրժուա-նացիոնալիստներին, տրոցկիստներին, դաշնակցականներին, ալեքսիֆիկներին, որոնք խցկվելով մեր տնտեսության ղեկավար օրգանները վնասում ու քայքայում էին ժողովրդական տնտեսությունը և ուզում էին երկիրը ծախել օտար կապիտալիստական պետություններին։

Միութենական կառավարությունից ստացած հսկայական գումարները չէին օգտագործվում հատկացված նպատակներին։ Նրանք մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության օբյեկտները պրովալի էին ենթարկել, թալանելով պետական միջոցները։



Բայց նրանք չկարողացան թաքնվել ու ծածկվել բոլշևիկյան պարտիայի սուր աչքից, մեր ժողովուրդների մեծ բարեկամ, հանճարեղ առաջնորդի աչքից. 1937 թըվի աշնանը ՀամԿ(բ)Պ Կենտկոմն ու անձամբ ընկեր Ստալինը իրենց պատմական նամակում նախազգուշացրին, որ Հայաստանում տնտեսական և կուլտուրական գործերը գտնվում են շատ վատթար դրության մեջ, որ ստացված միջոցները չեն օգտագործվում հատկացված նպատակներին։

Ընկեր Ստալինի ցուցմունքով և հայ ժողովրդի հարազատ զավակ ընկեր Միկոյանի անմիջական օգնությամբ մերկացվեցին և ջնջվեցին ժողովրդի թշնամիները. ղեկավարությունն անցավ Լենինի-Ստալինի մեծ գործին մինչև վերջը նվիրված մարդկանց ձեռքը, որոնք անշեղորեն իրագործում են պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի ցուցումները։

Այս վերջին 3 տարվա ընթացքում հսկայական քայլերով առաջ գնաց մեր արդյունաբերությունը, շինարարությունը, գյուղատնտեսությունը, լայնացվեց ցանքերի

տարածությունը, բարձրացվեց բերքատվությունը, բարգավաճեց կուլտուրան, էլ ավելի բարելավվեց մեր աշխատավորների կուլտուր-կենցաղային դրությունը, էլ ավելի ամրապնդվեց մեր աշխատավորության քաղաքական ու բարոյական միասնությունն ու անսահման սերը դեպի համայն աշխարհի աշխատավորների առաջնորդ մեծ Ստալինը։





# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՔՍԱՆ ՏԱՐՈՒՄ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԻՆՉԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՎԵԼԸ

Մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ Ռևոլյուցիան, Հայաստանը լինելով ցարական Ռուսաստանի գաղութ, արդյունաբերության տեսակետից ներկայացնում էր ցարական Ռուսաստանի ամենահետամնաց ծայրամասերից մեկը։ Ողջ ժողովրդական տնտեսության արտադրանքի մեջ արդյունաբերության արտադրանքը բռնում էր չնչին տեղ, ինչպես այդ վկայում են հետևյալ փաստերը. 1913 թվին արդյունաբերության մեջ զբաղված էին մոտ 6 հազար բանվոր, ընդ որում խոշոր արդյունաբերության մեջ զբաղված բանվոր-

ների թիվը կազմում էր 4.500 հոգի, այն էլ ընկնում էր պղնձարդյունաբերության խոշոր երկու ձեռնարկությունների՝ Ղափանի և Ալավերդու պղնձահանքերի հաշվին: Բանվորության մնացած մասն զբաղված էր վերամշակող արդյունաբերության մի քանի ձեռնարկություններում: Դրանց թվին պատկանում էին՝ Շուստովի կոնյակի և գինու գործարանը, Գաբրիելովի կաշեգործարանը, Եսայովի կոնսերվի գործարանը, Տեր-Ավետիսովի մեխանիկական արհեստանոցը: Բացի դրանցից՝ գոյություն ունեին մոտ երկու տասնյակ տնայնագործական տիպի մանր ձեռնարկություններ, իրենց արհեստագործական տեխնիկայով:

1919 թ. արդյունաբերության ընդհանուր արտադրանքը 1926—27 թ. թ. անփոփոխ գներով կազմում էր 20,7 միլիոն ռուբլի, իսկ արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը ողջ ժողովրդական տնտեսության մեջ կազմում էր 23,9 տոկոս, այսինքն՝ նրա քառորդից էլ քիչ: Միակ խոշոր արդյունաբերությունը— պղնձահանքերը, որը Հայաստանի արդյունա-



բերական արտադրանքի 44 տոկոսն էր տալիս, տարբերկրյա կապիտալիստների կողմից ամենագազանային մեթոդներով էր մշակվում:

Ահա այս չնչին արդյունաբերությունն էր, որ իմպերիալիստական կռիվների և հատկապես հայկական ազգային բուրժուազիայի ու նրա հավատարիմ շների՝ դաշնակ-բանդիտների տիրապետության տարիներին ամենախոր անկման հասավ: Սնանկանում ու թալանվում էին արտադրական ձեռնարկությունները, ջրով լցվում ու անպետքանում հանքերը: Ազգամիջյան եղբայրասպան կռիվների ու ավերների հետևանքով Հայաստանի արդյունաբերությունը զրկվել էր գյուղատնտեսական հումքից: Արդյունաբերական արտադրանքը խստորեն կրճատվեց, 1919 թ. կազմելով 1,7 միլիոն ռուբլի, 1913 թ. 20,7 միլիոն ռուբլու դիմաց: Բայց Հայաստանի ընդերքը հարուստ էր օգտակար հանքերի մեծ պաշարներով և էլեկտրոէներգիայի խոշոր ռեսուրսներով:

Հայաստանի արգավանդ հողերն ունեին բոլոր պայմաններն արժեքավոր և տեխնիկական կուլտուրաների զարգացման համար, որպեսզի դառնային արդյունաբերական հումքի լայնագույն բազա, սակայն

յուրական կառավարությունը չէր էլ մտածում արդյունաբերության ստեղծման մասին և գյուղատնտեսական հումքն արտահանում էր երկրից՝ Ռուսաստանի կենտրոնական նահանգները՝ վերամշակման համար:

Այս էր Հայաստանի արդյունաբերության պատկերը, որ ժառանգություն ստացավ սովետական իշխանությունը:

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՁԵՌՔԲԵՐԱԾ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՔՍԱՆ ՏԱՐՈՒՄ

Սովետական իշխանության գոյության քսան տարիների ընթացքում հիմնովին վերակառուցվել է երկրի էկոնոմիկան: Կառուցված են մեծ թվով արդյունաբերական ձեռնարկություններ: Հայաստանն ագրարային հետամնաց երկրից վերածվել է ինդուստրիալ-ագրարային երկրի, Սովետական Միության առաջավոր արդյունաբերական ռեսպուբլիկայի:

Հայաստանում սովետական իշխանության հաստատման հենց առաջին իսկ օրից, երկրի աշխատավորները ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, Լենին-Ստալինի



պարտիայի անմիջական ղեկավարությամբ և հայ ժողովրդի մեծ բարեկամ Ստալինի անձնական հոգատարությամբ, սկսեցին արդյունաբերական քայքայված ձեռնարկությունները վերականգնել: Սովետական իշխանության գոյության քսան տարիների ընթացքում ժողովրդական տնտեսության նոր ճյուղերի կապիտալ շինարարության համար ներդրվել է 2·281,6 միլիոն ռուբլի: Միայն Ստալինյան երկու հնգամյակների ընթացքում կառուցվել է 43 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն (այդ թվում՝ Քանաքեռգեսը, Ձորագեսը, Լենգեսը, ՍԿ սովպրենը, Լենինականի Տեքստիլ և Մսի կոմբինատները և այլն):

Պղնձահանքային արդյունաբերությունն այս քսան տարիների ընթացքում հիմնովին վերակառուցվել է, հանքերը մեքենայացման են ենթարկվել, կառուցվել ու կահավորվել է նոր պղնձաձուլական գործարանը, ավարտվում է ծծմբաթթվի գործարանի շինարարությունը: Երկրաբանական-գիտահետազոտական լայն աշխատանքը խոշոր արդյունաբերական նշանակություն ունեցող պղնձի և այլ մետաղների հարուստ նոր հանքատեղեր է հայտնաբերել (Փիրդոուդան, Ագարակ). այժմ լայն հե-

ռազոտական աշխատանքներ են կատարվում դրանց արդյունաբերական պաշարները որոշելու համար։ Ստեղծված են արդյունաբերության նոր ճյուղեր՝ քիմիական արդյունաբերություն. Կիրովականում կառուցված է Քիմիական կոմբինատ, իսկ Երևանում Սինթետիկ կաուչուկի խոշոր կոմբինատը։

Խոշոր տեմպերով զարգացել է տեքստիլ արդյունաբերությունը։ Սովետական իշխանության տարիներին Լենինականում կառուցվել է մանվածքային երկու գործարան (նրանցից մեկը— 76 հազար իլիկով, որը շահագործման է հանձնվել 1939 թվին), շահագործման է հանձնված նաև գործվածքային գործարանը՝ 2.272 դազգահով։

Երևանում կառուցվել է ալրաղաց կոմբինատ, մետաքսամշակման գործարան։ Տեքստիլ արդյունաբերության հենց միայն 1939 թ. արտադրանքը կազմել է 40 միլիոն ռուբլի։ Նշանակելիորեն մեծացել է մետաքսի գործվածքների արտադրությունը, 1932 թ. 8,1 հազար մետրից 1939 թ. հասնելով 276,3 հազար մետրի։ Կառուցված և վերակառուցված են կոնսերվի նոր գործարաններ, որոնց 1939 թ. արտա-



դրանքը 1913 թվի համեմատությամբ աճել է 17,2 անգամ և կազմել է 1926—27 թ. թ. անփոփոխ գներով 111 միլիոն ռուբլի։ 1940 թ. սկսված է կոնսերվի մի նոր գործարանի շինարարությունը Հոկտեմբերյանում, 16 միլիոն պայմանական տուփ կարողությամբ։ Աշտարակում սկսված է գինու նոր գործարանի շինարարությունը 600.000 դեկալիտր կարողությամբ և Սպիտակի շաքարի գործարանի շինարարությունը օրական 7,5 հազար տոնն շաքարի ճակնդեղի վերամշակման կարողությամբ։

Երևանում կառուցված է կոնսերվի նոր խոշոր գործարան, մսի կոմբինատ, ձեթօճառ կոմբինատ, Ձերժինսկու անվան Մեքենաշինական գործարանը և այլն։ Աճել են սննդի արդյունաբերության առանձին ճյուղերը. մսի արտադրությունը 1932 թ. կազմում էր 4,1 հազար տոննա, իսկ 1939 թվին 9,8 հազար տոննա, գինու արտադրությունը՝ 1927—28 թ. թ. 15,8 հազար հեկտոլիտրից հասել է 76,8 հազար հեկտոլիտրի, կոնյակինը՝ 1927—28 թ. թ. 187,2 հազար բացարձակ ալկոհոլ լիտրից 1937 թ. հասել է 220 հազար բացարձակ ալկոհոլ լիտրի, կենդանական յուղինը՝ 1932 թ. 32 տոննա-

յից 1939 թ. հասել է 817 տոննայի, ծխախոտինը՝ 1927—28 թ. թ. 40,8 միլիոն հատից 1938 թ. հասել է 160,1 միլիոն հատի, հացինը՝ 1927—28 թ. 6,4 հազար տոննայից 1939 թ. հասել է 124,5 հազար տոննայի:

Ստեղծված է նաև կանդիտերային և այլ թխվածքների արտադրություն: Սննդի արդյունաբերությունն աշխատավորությանը տալիս է բարձրորակ սննդամթերքներ, պահածոներ, Սևանի իշխան ձուկ, կանդիտերային թխվածքներ և այլն: Ստեղծված է կաշվե կոշիկի նոր արդյունաբերություն, որի 1939 թ. արտադրանքը կազմել է 804 հազար զույգ զանազան կոշիկ: Կաշվե կոշիկի 1913 թ. ընդհանուր արտադրանքը հավասար է եղել 900 հազար ռուբ., 1927—28 թ. թ.՝ 1.458.000 ռուբ., իսկ 1939 թ.՝ 10.988 հազ. ռ., որը 12,2 անգամ ավելի է, քան 1913 թ.: Օճառի արտադրանքը 1927 թ. 300.000 ռուբ. 1919 թ. հասել է 2.494 հազար ռուբլու: Բասարգեչարում, Կալինինոյում և այլ շրջաններում սկսված է տեղական տորֆի, իսկ Ջաջուռում ածուխի արդյունահանումը, ստեղծված է ներկերի և լաքի, երաժշտական գործիքների արդյունաբերու-



թյուն, փայտամշակման կոմբինատ, մետաղամշակման գործարաններ Երևանում և Լենինականում:

Հայաստանը հարուստ է շինանյութերով՝ տուֆ, բազալտ, գրանիտ, մարմար, պեմզա, ցեմենտ, կիր և այլն: Շինանյութերի ընդհանուր արտադրանքը 1927 թ. 212.000 ռուբլուց 1939 թ. հասել է 14.946 հազար ռուբլու: Արթիկ տուֆի տարեկան արդյունահանումը հավասար է 100—110 հազար խորանարդ մետրի: Արթիկ տուֆից հիանալի շենքեր են կառուցվել ոչ միայն Երևանում, այլև Սովետական Միության մայրաքաղաքում՝ Մոսկվայում և միութենական ռեսպուբլիկաների մեծ քաղաքներում: Աղհամզալուի և Աղվերանի մարմարները միութենական հռչակ են վայելում: Այդ մարմարներով պատած են Մոսկվայի մետրոյի կայարանների պատերը և պիտի պատվեն սովետների պալատի պատերը:

Կղմինդրի արդյունաբերումը 1932 թ. 60,7 հազար հատից 1939 թ. հասել է 513,5 հազար հատի. աղյուսի արտադրանքը 1939 թ. կազմում է 6,4 միլիոն հատ: Աճել է նաև փայտամշակման արդյունաբերությունը, որի արտադրանքը 1926—27 թ. թ. 284 հազար ռուբլուց հասել է մինչև

11·057 ռ. 1939 թվին: Միայն էլեկտրոկայանների շինարարության կապիտալ ներդրումների գումարը կազմում է 255 միլիոն ռուբլի, որի հետևանքով էլեկտրոէներգիայի արտադրանքը 1939 թ. աճել է 66,8 անգամ, 1913 թ. համեմատությամբ:

Արդյունաբերության համար և էներգետիկ միջոցների ավելի կոնկրետ ու էֆեկտիվ օգտագործման տեսակետից խոշոր նշանակություն ունի Սևան-Զանգու կասկադը:

Երկրի ինդուստրացման հետևանքով արագորեն աճել է և արտադրանքի քանակը. եթե 1913 թ. խոշոր արդյունաբերությունը տվել է 20,7 միլիոն ռուբլու արտադրանք (1927—28 թ.թ. անփոփոխ գներով), իսկ դաշնակների տիրապետության օրոք 1,7 միլիոն ռուբլու արտադրանք, ապա 1939 թվին ողջ արդյունաբերության ընդհանուր արտադրանքը կազմել է արդեն 398,6 միլիոն ռուբլի: Եթե արդյունաբերության տեսակարար կշիռը ողջ ժողովրդական տնտեսության մեջ 1913 թ. հավասար էր 23,9 տոկոսի, իսկ 1919 թ. 13,1 տոկոսի, ապա 1939 թ. կազմում է 77,9 տոկոս, այսինքն ժողովրդական տնտեսության արտադրանքի ավելի քան 3/4-ը տալիս է զարգացող սոցիալիստական արդյունաբե-



րությունը: Ըստ որում եթե խոշոր արդյունաբերության արտադրանքը 1913 թ. ողջ արդյունաբերության արտադրանքի 74,9 տոկոսն էր կազմում (15 միլիոն 540 հազար ռուբլի), ապա 1939 թ. կազմում էր 85,2 տոկոս (1927—28 թ.թ. անփոփոխ գներով—339·715 հազար ռուբլի):

Սակայն տեղի է ունեցել արտադրանքի ոչ միայն լոկ քանակական աճ, այլև ձեռք են բերվել որակական մեծ հաջողություններ սովետական նոր, հզոր տեխնիկայի կիրառման և բարձրորակ պրոդուկցիայի արտադրության գործում: Նշանակելիորեն աճել են արդյունաբերության արտադրական ֆոնդերը. եթե վերցնենք խոշոր արդյունաբերության թվերը, ապա 1927—28 թ.թ. արտադրական ֆոնդերը կազմում էին 18·996 հազար ռուբլի, իսկ 1939 թ. արդեն հավասար էին 517·019 հազար ռուբլու, այսինքն 1927—28 թ.թ. համեմատությամբ տեղի է ունեցել աճ՝ մոտ 28 անգամ: Այդ թվում ըստ ճյուղերի՝ քիմիական արդյունաբերության արտադրական ֆոնդերն աճել են 498 անգամ, իսկ մետաղամշակման արդյունաբերության արտադրական ֆոնդերը՝ 369 անգամ:

Արդյունաբերական շինարարության մեջ

ներդրվել է ավելի քան 600 միլիոն ռուբլի: Զգալիորեն աճել են նաև մանր արդյունաբերության արտադրական ֆոնդերը. եթե 1938 թվին այն կազմում էր 15.822 հազար ռուբլի, ապա 1939 թ.՝ 21 միլիոն 306 հազար ռուբլի:



Արագ թափերով զարգացել է արհեստագործական կոոպերացիան, որն արտադրում է կղմինդր, մահճակալներ, գորգեր և այլն: 1932 թ. նրա ընդհանուր արտադրանքը հավասար էր 22,3 միլիոն ռուբլու, իսկ 1939 թվին՝ 93,6 միլիոն ռուբլու. առանձին վերցրած Հայարդսովետի արտադրանքը 1926 թ. կազմում էր 21,1 միլիոն ռուբլի, 1939 թ.՝ 83 միլիոն 617,5 հազար ռուբլի: Հաշմկոոպմիության 1932 թ. արտադրանքը կազմում էր 1182,6 հազար ռուբլի, իսկ 1939 թ.՝ 4192,0 հազար ռուբլի:

Այս է արդյունաբերության աճի և արտադրվող պրոդուկցիայի քանակի մեծացման պատկերը Հայաստանում, այս քսանտարվա ընթացքում: Երկրի ինդուստրացման և նոր արդյունաբերության ստեղծման հետևանքով աճել է նաև բանվորների տարեկան միջին թիվը, որը խոշոր արդյու-



նաբերության մեջ 1939 թ. արդեն կազմում էր 24.922 հոգի, 1913 թ. 4956 հոգու դիմաց: Քանակական աճին զուգընթաց բանվոր դասակարգն աճել է և որակապես. բարձրացել է նրա տեխնիկական գիտությունների մակարդակը, նոր տեխնիկայի յուրացման աստիճանը, զարգացել են նրա աշխատանքի սոցիալիստական մեթոդները (սոցմրցում, հարվածայնություն, ստախանովական շարժում, բազմադազգահային սիստեմ), բարձրացել է նրա արտադրողականությունը, ամրապնդվել է նրա աշխատանքային կարգապահությունը. բանվոր դասակարգն այժմ մեծ էնտուզիազմով է կատարում ու գերակատարում իր արտադրական պլանները: Աշխատանքի արտադրողականության աճի տոկոսը 1939 թվին 1913 թվի համեմատությամբ կազմում է 434,8 տոկոս, իսկ 1927—28 թ.թ. համեմատությամբ՝ 397,1 տոկոս:

Արտադրողականության բարձրացման հետևանքով խոշոր արդյունաբերության մեկ բանվորի արտադրանքը 1939 թ. (1927—28 թ.թ. անփոփոխ գներով) կազմում էր 13.631 ռուբլի, 1927—28 թ. թ. 3433 ռուբլու փոխարեն, այսինքն՝ տեղի է ունեցել աճ՝ 3,9 անգամ:

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ-ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԱՊՐԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ

Արդյունաբերության և գյուղատնտեսության բուռն զարգացման հետևանքով Հայաստանի բանվորների, ծառայողների, կոլխոզնիկների նյութական-կենցաղային դրության լավացման հետ միասին աճել է նաև ապրանքաշրջանառությունը:

Փոխվել է ապրանքաշրջանառության ստրուկտուրան. աճել է կարևոր մթերքների սպառումը. այսպես օրինակ՝ հացի և թխվածքների սպառումը 1935 թվին կազմում էր 81.003 հազար ռուբլի, իսկ 1939 թ.՝ 158.456 հազար ռուբլի, այսինքն՝ աճը 4 տարվա ընթացքում հավասար է մոտ երկու անգամի:

Շաքարի սպառումը 1935 թ. 27.487 հազար ռուբլուց հասել է 1939 թ. 48.947 հազար ռուբլու, այսինքն աճ՝ 1,7 անգամ: Միս և մսեղենինը՝ 1935 թ. 6.634 հազար ռուբլուց 1939 թ. 18 միլիոն 899 հազար ռուբլու, այսինքն աճ՝ 2,8 անգամ: Գործվածքների սպառումը նույն տարիների ընթացքում աճել է ավելի, քան 2,5 անգամ, կոշիկինը՝ 2,5 անգամ, լվացքի օճառինը՝



2 անգամ, նավթինը՝ 2 անգամ, կահ-կարասու սպառումը 1935 թ. 3.945 հազար ռուբլուց հասել է 1939 թ. 16 միլիոն 858 հազար ռուբլու, այսինքն՝ աճ 4 անգամ, այլ՝ ոչ-մթերային ապրանքների սպառումը 1935 թ. 16 միլիոն 877 հազար ռուբլուց հասել է 1939 թ. 90 միլիոն 696 հազար ռուբլու: Աճել է ապրանքաշրջանառության ընդհանուր գումարը. եթե 1928 թ. մանրածախ ապրանքաշրջանառությունը հավասար էր 37 միլիոն 108 հազար ռուբլու, ապա 1939 թ. հավասար էր 928 միլիոն 587 հազար ռուբլու:

Աճել է նաև հասարակական սննդի ձեռնարկությունների շրջանառությունը. 1928 թ. մեկ միլիոն 278 հազար ռուբլուց 1935 թ. բարձրանալով մինչև 73,4 հազար ռուբլու: Հասարակական սննդի ցանցը նույն տարիների ընթացքում՝ 1937 թ. 232 օբեկտից հասել է 1940 թ. 376 օբեկտի:

***

Լենինյան-Ստալինյան ինդուստրացման պլանի փայլուն իրագործման հետևանքով, Հայաստանը հարստացել է, իսկ նրա բյուջեն ավելի ուժեղացել. եթե 1928—29 թ.թ. պետական բյուջեն կազմում էր 52,4 միլիոն ռուբլի, ապա 1939 թ. 497,6 մի-

լիոն։ Աճել է նաև խնայողական դրամարկղների թիվը, 1928 թվի 77-ից՝ 1939 թ. հասնելով 251-ի։ Նույն տարիների ընթացքում ավանդատուների թիվը 5,2 հազարից հասել է մինչև 1—VIII 1940 թ. 81,5 հազարի, իսկ ավանդների մնացորդները—1928 թ. 324 հազար ռուբլուց հասել է մինչև 1—VIII 1940 թ. 35·689 հազար ռուբլու։

Այս պերճախոս թվերը վկայում են աշխատավորների հարստացման և նրանց խնայումների ավելացման մասին։





# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՔՍԱՆ ՏԱՐՈՒՄ

Սովետական իշխանության գոյության քսան տարվա ընթացքում, Հայաստանի աշխատավորներն աննախընթաց հաջողություններ են ձեռք բերել ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր ճակատներում, այնպես և գյուղատնտեսության ասպարեզում։ Անճանաչելի է դարձել մեր գյուղը։ Հայ գյուղացիության դարավոր իղձը՝ խաների, բեգերի, կալվածատերերի, կուլակների ու կապիտալիստների ճնշումից ազատագրվելու մասին, իրականացել է լիովին։ Ստալինյան Կոնստիտուցիայի արևի տակ Հայաստանի կոլխոզնիկները կոփում են իրենց երջանիկ, ունևոր կյանքը։

Մինչև սովետական իշխանության հաստատվելը, գյուղատնտեսությունը երկրի ամենահետամնաց ճյուղն էր։ Ամբողջ հողի—հայ գյուղացիության կյանքի աղբյուրի 59 տոկոսը պատկանում էր պետությանը, կալվածատերերին, վանքերին, խաներին ու բեկերին։ Էջմիածնի և Տաթևի վանքերին էր պատկանում Հայաստանի ամբողջ վարելահողի 3 տոկոսը. հենց միայն մի կալվածատեր՝ խան Մակինսկին Հայաստանի հարուստ շրջաններում ուներ 18 կալվածք՝ 19·218 հեկտար տարածությամբ։ Ամբողջ գյուղացիական բնակչության 85 տոկոսը կազմում էր աշխատավոր չքավորագույն գյուղացիությունը, որն ուներ նվազ, անբերրի հողեր և դաժանաբար շահագործման էր ենթարկվում կալվածատերերի, վանքերի ու բեկերի կողմից։

Արտադրության հիմնական գործիքը, որից օգտվում էր գյուղացիական տնտեսությունների մեծամասնությունը՝ արորն էր։ Երկաթե ութանին այն ժամանակ հազվագյուտ գյուղատնտեսական գործիք էր, որը միայն կալվածատերերի ու կուլակների սեփականությունն էր կազմում։

Հայաստանի գյուղատնտեսությունն էլ ավելի վատթարացավ, աշխատավոր գյու-



ղացիությունը վերջնականապես քայքայվեց 1918—1920 թվականներին՝ դաշնակցական բանդաների սանձարձակությունների ժամանակաշրջանում։

Նախքան Հայաստանում Սովետական իշխանության հաստատվելը, գյուղացիական տնտեսությունների 60 տոկոսը կազմում էին չքավորները, 15 տոկոսը՝ կալվածատերերն ու կուլակները և 25 տոկոսը՝ միջակները։ Գյուղացիական տնտեսությունների ընդհանուր թվից 40 տոկոսը չուներ քարշող ուժ, ինվենտարազուրկ տնտեսությունները կազմում էին 20 տոկոս, ցանքազուրկ տնտեսությունները՝ 25 տոկոս։ Այս էր հայ գյուղացիության դրությունը նախքան Սովետական իշխանության հաստատվելը։

Սովետական իշխանությունը, Լենինի-Ստալինի պարտիան հայ գյուղացիությունը դուրս բերին այդ աղքատ վիճակից։ Այժմ գյուղացիական տնտեսությունների 98 տոկոսը միավորված է կոլխոզներում, և կոլեկտիվ աշխատանքով կառուցում է իր ունևոր, հրճվալից կյանքը։

Հայաստանում Սովետական իշխանության գոյության տարիների ընթացքում գյուղատնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումների գումարը կազմում է 559 մի-

լիոն ռուբլի, այդ թվում՝ խրճիթային վրա ծախսվել է 113,7 միլիոն ռուբլի: Միայն 1940—41 թ. թ. ընթացքում, «Հայկական ՍՍՌ-ում պտղատու-խաղողի այգիների և տեխնիկական կուլտուրաների զարգացման ուղղությամբ կիրառվելիք ձեռնարկումների մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թվի սեպտեմբերի 6-ի որոշման հիման վրա, գյուղատնտեսության մեջ լրացուցիչ կերպով կներդրվի մոտավորապես 350 միլիոն ռուբլի:

Գյուղատնտեսության արմատական վերակառուցումը և գյուղում կոլխոզային կարգերի վերջնական հաղթանակն ապահովեցին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բուռն ծաղկումը՝ մեխանիզացիայի բազայի վրա:

Ռեսպուբլիկայում ցանքերի ամբողջ տարածությունը 1919 թվի համեմատությամբ աճել է 5,3 անգամ, այսինքն՝ 1919 թվին եղած 82,7 հազար հեկտարից 1939 թվին հասավ մինչև 438,9 հազար հեկտարի: Գյուղատնտեսական առանձին կուլտուրաների գծով այդ աճը համապատասխանորեն արտահայտվում է հետևյալ կերպ. հացահատիկային կուլտուրաների ցանքերի տարածությունն աճել է 4,6 անգամ, բամբակինը՝



26,4 անգամ, ծխախոտինը՝ 35 անգամ, կարտոֆելինը՝ 7 անգամ, բանջարանոցաբոստանային կուլտուրաներինը՝ 8,5 անգամ, կերի կուլտուրաներինը՝ 16 անգամ, պտղատու այգիներինը՝ 11 անգամ, խաղողի այգիներինը՝ 4 անգամ:

Հսկայական աճ ունենք հացահատիկային կուլտուրաների բերքատվության ասպարեզում: 1939 թվին բերքատվությունը բարձրացավ մինչև 9,0 ցենտների՝ 1919 թվի 4,9 ցենտների դիմաց, որը կազմում է աճ՝ 83,7 տոկոսով. բամբակի բերքատվությունը համապատասխանորեն հասավ 19,1 ցենտների՝ 5,6 ցենտների դիմաց, որը կազմում է աճ 241,1 տոկոս. ծխախոտինը՝ 4,1 ցենտներից հասել է 9,2 ցենտների—աճ 100 տոկոսով. կարտոֆելինը՝ 59,6 ցենտներից հասել է 105,4 ցենտների— աճ՝ 76,8 տոկոսով. բազմամյա խոտաբույսերինը 23,0 ցենտներից 33,2 ցենտների— աճ՝ 44,3 տոկոսով, բնական խոտհարքներինը 8,5 ցենտներից 15,5 ցենտների— աճ՝ 82,4 տոկոսով:

Սովետական իշխանության տարիների ընթացքում կառուցվել են ոռոգիչ խոշոր ջրանցքներ 406,5 կիլոմետր երկարությամբ, որի հետևանքով ռեսպուբլիկայում ոռոգվող հողային տարածությունները 1919 թվին

եղած 60,4 հազար հեկտարից հասցվել են մինչև 191,1 հազար հեկտարի: Վերակառուցված են խոշոր ջրանցքները՝ Էջմիածնի, Դալմայի, Արուհայաթի, Շահումյանի, Եղիրի առուն և այլն: Կատարված է իրրիգացիոն նոր սիստեմների լայն շինարարություն, ինչպես Շիրակի՝ Լենինի անվան ջրանցքը, Այղր լճի, Փ. Սարդարաբադի սիստեմը, Ղուրի՝ Ստալինի անվան ջրանցքը, Հարավային և Հարավ-արևելյան գծերը և այլն:

Իրենց իսկ կոլտնտեսականների նախաձեռնությամբ ու միջոցներով արագընթաց մեթոդներով կատարվել են իրրիգացիոն աշխատանքներ, կառուցվել են նոր ջրանցքներ, ինչպես օրինակ՝ Նալբանդի, Սխախանի ջրանցքները: Ներկայումս Ստեփանավանի, Կալինինոյի և Ալավերդու շրջաններում կոլխոզային շինարարության էնտուզիաստները ձեռնամուխ են եղել Ստեփանավան-Ուզունլար ջրանցքի, իսկ Աշտարակի, Վաղարշապատի և Զանգիբասարի շրջաններում—Ստալինի Զանգվի ջրանցքի շինարարությանը, կառուցվում են նաև այլ ջրանցքներ: Այդ ջրանցքները ռեսպուբլիկայի սոցիալիստական հողագործությանը կտան ևս 54 հազար հեկտար նոր ոռոգվող հարմար հողեր:

Իրրիգացիոն սիստեմների վերակառուց-



ման և նոր շինարարության հետևանքով, գյուղատնտեսական շրջանառության մեջ են մտցվել ճահճակալած և այլ ամայի անմշակ հողեր: Սովետական իշխանության գոյության տարիների ընթացքում ստացված ոռոգվող նոր հողերը կազմում են մոտ 54,7 հազար հեկտար:

Արդյունք նոր հողերի օգտագործման բաղայի վրա խիստ փոխվել է մշակվող կուլտուրաների կազմը, աճել է տեխնիկական կուլտուրաների ցանքերի տարածությունը— բամբակի, ծխախոտի, պտղատու և խաղողի այգիների, նոր մշակվող կուլտուրաների— շաքարի ճակնդեղի, խորդենու, գալմաթյան երիցուկի և այլն:

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐ

Տեխնիկական կուլտուրաների, պտղատու և խաղողի այգիների զարգացումը հիմնական միջոցներից մեկն է մեր կոլխոզների բարեկեցությունը բարձրացնելու, կոլխոզնիկների ավելի ունևոր կյանք ստեղծելու համար, ուստի և մեր պարտիան, Սովետական կառավարությունն անշեղորեն, տարեց-տարի ձեռնարկումներ են կիրառում տեխնիկական կուլտուրաների, խաղողի ու

պտղատու այգիների տարածությունն ավելացնելու ուղղությամբ:

1937 թվի համեմատությամբ, մենք ունենք ծխախոտի ցանքերի տարածության աճ 82,8 տոկոսով, շաքարի ճակնդեղի՝ 315 տոկոսով, խորդենու՝ 543 տոկոսով:

Ցանքերի տարածության աճմանը զուգընթաց, մենք ունենք նաև այդ կուլտուրաների բերքատվության զգալի աճ:

**Բամբակագործություն**.— Բամբակագործության բնագավառում ձեռք բերված հաջողությունները հատկապես նշանակալի են 1938 և 1939 թվականներին: Եթե բամբակի միջին բերքը յուրաքանչյուր հեկտարից 1919 թվին կազմում էր 5,6 ցենտներ և 1937 թվին 12 ցենտներ, ապա 1939 թվին յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասավ մինչև 19,1 ցենտների, որը 1919 թվի համեմատությամբ կազմում էր 341,1 տոկոս, իսկ 1937 թվի համեմատությամբ՝ 162,7 տոկոս:

Բամբակի համախառն բերքը 1919 թվին կազմում էր 3,4 հազար ցենտներ, 1937 թվին 2157 հազար ցենտներ, իսկ 1939 թվին 303,2 հազար ցենտներ, որը 88 անգամ ավելի է քան 1919 թվին, իսկ 1937



թվի համեմատությամբ կազմում է 171 տոկոս:

Բամբակի բարձր բերքի համար մղվող պայքարի մեջ առաջից են ընթանում Ղամարլուի շրջանի կոլխոզնիկները, որոնք յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 17 ցենտների փոխարեն ստանում են շրջանում միջին հաշվով 23,6 ցենտներ· Վաղարշապատի շրջանը պլանով նախատեսված 15,05 ցենտների փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստացել է շրջանում միջին հաշվով 22,7 ցենտներ, իսկ Զանգիբասարի շրջանը պլանով նախատեսված 15 ցենտների փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստացել է շրջանում միջին հաշվով 19,5 ցենտներ:

Վերջին երկու տարվա ընթացքում Հայաստանի բամբակագործ կոլխոզնիկները մեծ գումարներ ստացան իբրև մրցանակ հավելում բարձր բերքի համար: 1938 թվին այդ գումարը կազմում էր 15·329 հազար ռուբլի, իսկ 1939 թվին կոլխոզներն ստացան մոտավորապես 20 միլիոն ռուբլի:

Բամբակի բարձր բերքի ստախանովականները ձեռք են բերում բերքի նորանոր ռեկորդներ: Առանձին կոլխոզներ և բրիգադաներ ցույց են տալիս բերքատվության հա-

մար մղվող պայքարի փայլուն օրինակներ։ Ղամարլուի շրջանի Իմանշալու գյուղի կոլխոզը 70 հեկտար տարածության վրա ստացել է հեկտարից 34 ցենտներ միջին բերք, Վաղարշապատի շրջանի «Անաստված» կոլխոզը 272 հեկտար տարածության վրա ստացավ հեկտարից 27 ցենտներ միջին բերք և այլն։

**Խորդենի**.— Բամբակագործական շրջաններում արմատավորվող նոր տեխնիկական կուլտուրաներից հատկապես մեծ հեռանկարներ ունի խորդենին։ 1937 թվին Հոկտեմբերյանի շրջանում իբրև փորձ տնկվել էր ընդամենը 7 հեկտար խորդենի։ 1939 թվին այդ տարածությունը հասցվեց մինչև 285 հեկտարի, իսկ 1940 թվին՝ 450 հեկտարի։ Խորդենին բարձր եկամտաբեր կուլտուրա է։ 1939 թվին այդ կուլտուրայից ստացվեց մոտ 2 միլիոն ռուբլի եկամուտ։

**Ծխախոտագործություն**.—Դեղին ծխախոտի բարձրորակ տեսակների մշակումը մեծ նշանակություն ունի ոչ միայն Հայաստանի ծխախոտի արդյունաբերության զարգացման, այլև Միության հյուսիսային մարզերի համար։

1939 թվին ծխախոտի կուլտուրան վերածվեց հեռանկարային կուլտուրայի՝ Հայ-



կական ՍՍՌ շրջանների մեծամասնությունում նրա ցանքերի տարածությունն ընդարձակելու լայն հնարավորություններով։

Ծխախոտի ցանքերի տարածությունը Հայաստանում 1919 թվին կազմում էր 0,1 հազար հեկտար, 1937 թվին՝ 2,8 հազ. հեկտար, իսկ 1940 թվին՝ 5 հազ. հեկտար։ Ծխախոտի ցանքերի տարածության աճմանը զուգընթաց բարձրանում է նաև բերքատվությունը, 1919 թվի 4,1 ցենտներից 1939 թվին հասնելով հեկտարից մինչև 9,2 ցենտների, իսկ 1940 թվին ծխախոտի բերքատվությունը կլինի շատ ավելի բարձր։ Ծխախոտագործությունն արագ տեմպերով զարգանում է վերջին 2—3 տարում։ 1938 թվին ծխախոտի մշակությամբ զբաղվում էին 11 շրջաններում, իսկ 1940 թվին՝ 22 շրջաններում։

Առանձին շրջաններ հասել են էլ ավելի բարձր բերքի։ Նոյեմբերյանի շրջանը հեկտարից միջին հաշվով ստացել է 9,9 ցենտներ, Կոտայքի շրջանը՝ 12,6 ցենտներ, Շամշադինի շրջանը՝ 13,2 ցենտներ և այլն։ Մի շարք կոլխոզներ, բրիգադաներ և օղակներ ձեռք են բերել խոշոր հաջողություններ. Շամշադինի շրջանի ընկ. Բերխայի անվան կոլխոզը 40 հեկտար տարածության

վրա ստացել է հեկտարից միջին հաշվով 19,8 ցենտներ «տրապիզոն» ծխախոտ, իսկ նույն այդ կոլխոզի բրիգադիր ընկ. Վասիլ Մաճկալյանը 6 հեկտար տարածության վրա ստացել է հեկտարից 22 ցենտներ բերք. Կոտայքի շրջանի «Սոցարշավ» կոլխոզը 31,5 հեկտար տարածության վրա ստացել է հեկտարից միջին հաշվով 17 ցենտներ «տիկ-կուլակ» ծխախոտ, իսկ «Կարմիր մաճկալ» կոլխոզը՝ 31,5 հեկտար տարածության վրա ստացել է հեկտարից 19,1 ցենտներ բերք:

**Շաքարի ճակնդեղ**.— Շաքարի ճակնդեղի արմատավորումը Հայաստանում ունի ոչ հնավոր անցյալ: Առաջին անգամ այն մշակվել է 1935 թվին և արդեն 1939 թվին շաքարի ճակնդեղի ցանքերի տարածությունը հասավ 1.200 հեկտարի, իսկ 1940 թվին կազմում է 1.500 հեկտար: Հետհնձյա ճակնդեղի տարածությունն անցյալ տարվա 50 հեկտարից այժմ՝ 1940 թվին հասցված է 450 հեկտարի: Շաքարի ճակնդեղը Հայաստանում ունի զարգացման մեծ հեռանկար. Նրա բազայի վրա կառուցվում է շաքարի գործարան:

Կոլխոզներում շաքարի ճակնդեղի միջին



բերքն անցյալ տարի կազմեց հեկտարից 182 ցենտներ:

ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ «Հայկական ՍՍՌ-ում պտղատու-խաղողի այգիների և տեխնիկական կուլտուրաների զարգացման ուղղությամբ կիրառվելիք ձեռնարկումների մասին», նոր վիթխարի հնարավորություններ ու հեռանկարներ է բաց անում բամբակագործների, ծխախոտագործների, ճակնդեղագործների առջև՝ այդ կուլտուրաների ցանքերի տարածության հետագա ընդարձակման և բերքատվության բարձրացման գործում:

**Խաղողագործություն**.— Նախքան Հայաստանում Սովետական իշխանության հաստատվելը, այսինքն՝ 1919 թվին խաղողի այգիների տարածությունը կազմում էր 5.100 հեկտար. դրանք մեծ մասամբ փոքր տարածություններ էին, ամենաշատը 0,25 հեկտար: Չափազանց պրիմիտիվ էր խաղողագործության տեխնիկան: Ագրոկուլտուրական և մելիորատիվ ձեռնարկումների պլանի բացակայություն, վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարի բացակայություն, որոնք սովորաբար ոչնչացնում էին բերքի մինչև 40—50 տոկոսը, պատուղ-

ների ցածր արդյունքայնություն, այգիների վատ խնամք— ահա այն բնորոշ հատկանիշները, որոնք մեզ ցույց են տալիս այդ բնագավառում մանր-սեփականատիրական տնտեսավարման տխուր պատկերը:

20 տարվա ընթացքում ստեղծված է խոշոր սոցիալիստական խաղողագործական տնտեսություն:

Խաղողագործության զարգացման ասպարեզում մենք արագ աճ ունենք 1938 թվից: Միայն 1938 և 1939 թվականների ընթացքում խաղողի այգիների տարածությունն աճեց 3.100 հեկտարով: Երկու տարվա ընթացքում խաղողի այգիների տարածությունն աճեց շատ ավելի, քան առաջին և երկրորդ հնգամյակների ընթացքում՝ միասին վերցրած:

Խաղողագործությունն ուժեղ թափով զարգանում է Հայաստանի նաև նախալեռնային շրջաններում: Այդ շրջաններում տնկված են մինչև 400 հեկտար խաղողի այգիներ: 1940 թվին խաղողի այգիների տարածությունը ռեսպուբլիկայի կոլխոզներում աճեց ևս 2.000 հեկտարով:

Առաջին անգամ Հայաստանում խաղողի այգիներ տնկվեցին բարձրորակ սեղական ու ներմուծվող տեսակներից— մուսկաթ,



ֆուրմինտ և այլն: Լավագույն սեղական տեսակներն են՝ հաչաբաշը, մսխալին, Երևանի քիշմիշը և այլն:

Ռեսպուբլիկայի առաջավոր կոլխոզները, խաղողի բարձր բերքի համար մղվող պայքարում, 1939 թվին զգալի հաջողությունների հասան: Վեդու շրջանի «Արարատ» կոլխոզը 1937 թվին ստացած 45 ցենտներ միջին բերքի փոխարեն 1939 թվին ստացավ 120 ցենտներ, իսկ կոլխոզի համախառն եկամուտն աճեց մինչև 1.186.504 ռուբլու: Մեծ հաջողություններ ունեն նաև Ղամարլուի ու Վաղարշապատի շրջանների կոլխոզները: ՍՍՌՄ Ժողկոմսովետի և Համկ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ, խաղողի այգիների գոյություն ունեցող տարածությունը կկրկնապատկվի: 1940 թվից սկսած կտնկվեն 15 հազար հեկտար խաղողի նոր այգիներ:

**Պտղաբուծություն**.— Հայաստանի պտղաբուծությունը ևս, ինչպես որ խաղողագործությունը, քայքայվել էր դաշնակցական բանդիտների տնօրինության տարիներին: Եղած պտղատու այգիները կտրատվեցին, իսկ մնացած 1,5 հազար հեկտարը ներկայացնում էր ցածրարժեք տեսակի պտղատու ծառեր: Նրանցից ստացված

բերքը կազմում էր ընդամենը 25,3 հազար ցենտներ։

Սովետական իշխանության տարիների ընթացքում աճեց պտղաբուծության բերքատվությունը. 1939 թվին միջին հաշվով հեկտարից ստացվեց 46 ցենտներ բերք։

Հայաստանի լեռնային ու նախալեռնային շրջաններում լայնորեն արմատավորվում է պտղաբուծությունը, մասնավորապես միչուրինյան տեսակները։ Շատ շրջաններ (Ն. Բայազետի, Մարտունու, Բասարգեչարի, Ազիզբեկովի, Ախտայի, Սիսիանի և այլն), որտեղ մինչև ռևոլյուցիան չկար ոչ մի պտղատու ծառ, այժմ ստանում են հիանալի պտուղներ և այդ պտուղների էքսպոնատներն ուղարկում են Գյուղատնտեսական ցուցահանդես։ Այժմ հիշյալ լեռնային շրջանների 140 կոլխոզներում տնկված են մոտ 1000 հեկտար պտղատու այգիներ, որից 300 հեկտարը միչուրինյան տեսակներ։

Պտղատու այգիների տարածության ընդարձակումն սկսվեց 1937 թվի աշնանից և 4 տարվա ընթացքում կոլխոզներում տնկվեցին ավելի քան 6 հազար հեկտար նոր պտղատու այգիներ, այն ժամանակ, երբ մինչև 1936 թիվը կոլխոզներում



տնկվել էր ընդամենը 1260 հեկտար պտղատու այգի։

## ՍՈՑ. ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Սովետական Հայաստանը մեր Միության անասնապահական հարուստ շրջաններից մեկն է։ Դաշնակների տիրապետության ժամանակաշրջանում, նրանց ավերիչ քաղաքականության հետևանքով, անասնապահությունը Հայաստանում հասել էր առավելագույն անկման։

Անցած 20 տարվա ընթացքում անասնապահության բնագավառում Սովետական Հայաստանը ձեռք է բերել հսկայական նվաճումներ։ Եթե 1919 թվին ձիերի գլխաքանակը ընդունենք 100, ապա 1939 թվին այն հասավ 306%-ի։ Խոշոր եղջերավոր անասունը՝ 1919 թվին եթե ընդունենք 100, ապա 1939 թվին այն աճեց 259%-ով։ Ոչխարներ և այծեր 1919 թվին եղել են 470,9 հազ. գլուխ, իսկ 1939 թվին նրանց գլխաքանակը հասավ 1.759,6 հազ. գլխի։ Խոզեր եղել են 5,6 հազ. գլուխ, իսկ 1939 թվին՝ 61,6 հազար գլուխ։

Անասունների գլխաքանակի աճման բնագավառում այս նվաճումները ռեսպուբլիկայի մեջ ձեռք են բերվել գյուղատնտե-

ության կոլեկտիվիզացիայի բուռն աճման և անասնապահական ֆերմաների կազմակերպման հետևանքով:

Սովետական իշխանության գոյության տարիների ընթացքում մեր կոլխոզները անասնապահության զարգացման համար երկարատև վարկի կարգով պետությունից ստացել են ավելի քան 26 միլիոն ռուբլի:

Պետության օգնությամբ հարյուրավոր կոլխոզներ կառուցել են անասնապահական կուլտուրական լուսավոր շենքեր— գոմեր՝ ավելի քան 4,5 հազ. օբեկտ— 360 հազար գլխի համար, 1300 ոչխարանոց՝ 572 հազ. գլխի համար, խոզանոցներ՝ 12,7 հազ. գլխի համար, ախոռներ՝ 6100 հազ. գլխի համար, և այլն:

Հայաստանի կոլխոզներում անասնապահությունը հատկապես ուժեղ թափով սկսեց զարգանալ մեր պարտիայի 18-րդ համագումարից հետո:

1939 թվի հուլիսից մինչև այս տարվա սեպտեմբերի 1-ը կոլխոզները կազմակերպել են 48 նոր կաթնապրանքային, 122 ոչխարաբուծական, 401 խոզաբուծական ապրանքային ֆերմաներ: Գնվել են 9.428 գլուխ երինջ ու հորթ, 31.343 գլուխ ոչխար ու այծ և 2.856 գլուխ խոզ: Անասունների



գլխաքանակը կոլխոզային ապրանքային ֆերմաներում 1939 թվի հունվարի 1-ից մինչև 1940 թվի հունվարի 1-ն աճել է հետևյալ կերպ— ձիերինը 33 տոկոսով, խոշոր եղջերավոր անասուններինը՝ 18,7 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 34,3 տոկոսով, և խոզերինը՝ 5,8 տոկոսով: Եթե առ 1-ը հուլիսի 1939 թվի ռեսպուբլիկայում եղած 1076 կոլխոզներից 9 կոլխոզ չունեին ոչ մի տեսակի մթերատու անասուն, 49 կոլխոզ չունեին ոչ մի գլուխ մթերատու խոշոր եղջերավոր անասուն, 138 կոլխոզ չունեին ոչխարներ և 827 կոլխոզ չունեին խոզեր, ապա այժմ չկա ոչ մի կոլխոզ, որը չունենա անասնապահական ֆերմա:

**Գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը.**— Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման և կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապընդման գործում աչքի ընկնող դեր է պատկանում մեքենա-տրակտորային կայաններին, որոնց քանակը 1940 թվին արդեն հասավ 33-ի, 1930 թվին եղած 1 ՄՏԿ-ի և 1932 թվին եղած 7 ՄՏԿ-ի դիմաց: Մեքենա-տրակտորային կայանների թվի աճման հետ միասին աճել է նաև նրանց էներգո-

զինվածությունը. այսպես օրինակ՝ 1920 թվին Հայաստանը չուներ ոչ մի գյուղատնտեսական մեքենա: 1932 թվին եղել է ընդամենը 540 տրակտոր, իսկ առ 1-ն հունվարի 1940 թվի մենք ունեինք 1.488 տրակտոր. կոմբայնների թիվը համապատասխանորեն եղել է 2 հատ, իսկ այժմ ունենք 247 կոմբայն. բարդ կալսիչներ եղել են 105 հատ, այժմ ունենք 343. բեռնատար ավտոմոբիլներ եղել են 15 հատ, այժմ ունենք 791 ավտոմոբիլ: Տարեց - տարի ընդարձակվում է ՄՏ կայանների կողմից սպասարկվող տարածությունը. եթե 1933 թվին ՄՏԿ-ները սպասարկում էին 314 կոլխոզ, ընդամենը 66 հազար հեկտար ցանքերի տարածությամբ, ապա 1940 թվին ՄՏԿ-ները սպասարկում են արդեն 733 կոլխոզ՝ ընդամենը 432,8 հազար հեկտար ցանքերի տարածությամբ:

Հայաստանի գյուղատնտեսությունը բուռն թափով աճեց 1938 թվից սկսած, հատկապես այն բանից հետո, երբ վերջնականապես ջախջախվեցին ժողովրդի թշնամիները՝ տրոցկիստական-բուխարինական, դաշնակցական-նացիոնալիստական բանդաները, որոնք բուն էին դրել Հայաստանի



պարտիական ու սովետական օրգանների ղեկավարության մեջ: Բոլշևիկների պարտիայի ամենօրյա ղեկավարությունը, ընկեր Ստալինի անձնական հոգատարությունը, գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրության ճիշտ կենսագործումը վերջին տարիների ընթացքում ապահովեցին գյուղատնտեսության կոլեկտիվիզացիայի անշեղ աճը և կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապնդումը: 1.032 կոլխոզներում ընդգրկված է ռեսպուբլիկայի գյուղացիական տնտեսությունների 98,3 տոկոսը: Աճել է կոլխոզների տեսակարար կշիռը ժողովրդա-տնտեսական արտադրության մեջ, և նրանց համախառն եկամուտը:

Կոլխոզների աճմանն ու ամրապնդմանը զուգընթաց, զգալիորեն աճել է նաև իրենց իսկ կոլխոզնիկների եկամուտը: 1939 թվին կոլխոզնիկների ընդհանուր եկամուտից աշխօրերի դիմաց բաշխվել էր մոտավորապես 140 միլիոն ռուբլի՝ 1937 թվին բաշխված 86 միլիոն ռուբլու փոխարեն:

Միլիոնատեր կոլխոզների քանակը 1939 թվին հասավ 53-ի՝ 1937 թվին եղած 12-ի փոխարեն: Քիչ չեն այնպիսի կոլխոզները, որոնք անցյալ տարի յուրաքանչյուր աշ-

խօրի դիմաց բաշխեցին 18, 26, 28 ռուբլի և ավելի (Ն. Մալաթիա, Արտաշատ, «Ա-նաստված» և այլն):

Ալավերդու շրջանի Ծաթեր գյուղի կոլխոզի հավիվ՝ կոլխոզնիկ Պատվական Վի-րաբյանն իր որդու հետ միասին անցյալ տարի վաստակել էր 900 աշխօր, որի դի-մաց ստացավ 200 փութ հացահատիկ, 400 փութ կարտոֆել, 13 փութ պանիր, 2,5 փութ յուղ և 675 ռուբլի դրամ: Նա կա-ռուցեց 3 սենյակից բաղկացած նոր տուն, գնել է 2 մահճակալ, պատեֆոն և տնային այլ կահ-կարասի:

Կոլխոզնիկ Խաչատուր Բաղդոյանի ընտա-նիքը՝ Ղամարլուի շրջանի Արտաշատ գյու-ղի Միկոյանի անվան կոլխոզից, 1939 թվին վաստակած 972 աշխօրի դիմաց ստա-ցավ 25.535 ռուբլի: Նա կառուցել է 4 սենյակից բաղկացած երկհարկանի տուն, անց է կացրել էլեկտրական լուսավորու-թյուն, ունի պատեֆոն, ռադիո-ընդունիչ: Այս տարի գնել է բուֆետ՝ 2000 ռուբլի արժողությամբ, շիֆոներ և 3 մահճակալ:

Այսպիսի հազարավոր օրինակներ կարե-լի է բերել:

Աճում է կոլխոզնիկի կուլտուրական, ու-նևոր կյանքը: Այնպիսի հարմարություն-



ներ և տնային կահ-կարասի, ինչպես՝ զարդանկարվոր մահճակալները, պատեֆո-նը, ռադիո-ընդունիչը, շիֆոները, հայելին և այլն, սովորական բաներ են դարձել մեր կոլխոզնիկի կենցաղում: Միայն վերջին տարիների ընթացքում կոլխոզնիկները կա-ռուցել են 59.615 նոր կուլտուրական բա-րեկարգված տներ:

Էլեկտրականությունն ամուր արմատա-վորվել է մեր կոլխոզնիկների կյանքում: Գյուղերում, որտեղ նավթի փոքրիկ ճրա-գը շքեղություն էր համարվում, այժմ փայլում են շատ տասնյակ հազարավոր Իլ-յիչի լամպեր: 21 կոլխոզներ ունեն իրենց սեփական էլեկտրոկայանները, որոնք սպա-սարկում են հարյուրավոր գյուղերի: Բազ-մաթիվ բարդ գյուղատնտեսական մեքենա-ներ աշխատում են էլեկտրոէներգիայով:

Այն գյուղերը, որոնք անցյալում չունեին խմելու ջուր, Ստալինյան հնգամյակների տարիների ընթացքում Սովետական կառա-վարության օգնությամբ անց են կացրել 634 կիլոմետր ջրմուղ և փորել են 44 ար-տեզյան ջրհոր, որոնք 250.000 գյուղական բնակչության մատակարարում են խմելու մաքուր ջուր:

Հայաստանում սոցիալիստական գյուղա-

անտեսության զարգացման, անասնապահության և հողագործության ստախանովականների ու առաջավորների շարքերի աճման լավագույն ցուցանիշն է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների կազմն ու քանակը 1939 և 1940 թվականներին:

1940 թվին ռեսպուբլիկայից Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում ներկայացված էին 407 կոլխոզ, 6 սովխոզ, 112 կոլխոզային անասնապահական ֆերմա, 3995 առաջավորներ, 5 շրջան, որոնցից Ղամարլուի ու Վաղարշապատի շրջանները լայն ցուցադրման համար, 2 ՄՏԿ, 19 գիտական հիմնարկ և այլն: Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների քանակը 1940 թվին՝ 1939 թվի համեմատությամբ՝ աճեց 2,7 անգամ:

Գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած մեծ հաջողությունների և 1939 թվին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների համար սահմանված ցուցանիշները վերակատարելու համար 43 կոլխոզներ, սովխոզներ ու ֆերմաներ Ցուցահանդեսի գլխավոր կոմիտեի կողմից պարգևատրվեցին բարձր



պարգևներով ու մրցանակներով: Այդ թվում՝ առաջին աստիճանի դիպլոմով պարգևատրվել են Ալագյազի սովխոզը, Զանգիբասարի շրջանի Ղ. Ղուկասյանի անվան կոլխոզը, Ղուկասյանի շրջանի Միկոյանի անվան կոլխոզը, Սպիտակի շրջանի «Հոկտեմբեր» կոլխոզը և մի շարք այլ կոլխոզներ ու ֆերմաներ: Երկրորդ աստիճանի դիպլոմով պարգևատրվել են 35 կոլխոզ, Ոսկե մեծ մեդալով՝ ցուցահանդեսի 10 մասնակից, Ոսկե փոքր մեդալով՝ 17 մասնակից, Արծաթե մեծ մեդալով՝ 25 մարդ և Արծաթե փոքր մեդալով՝ 129 մարդ:

Մեր ռեսպուբլիկայի լավագույն կոլխոզները պարգևատրված են շքանշաններով— Վաղարշապատի շրջանի «Անաստված» կոլխոզը՝ Լենինի շքանշանով և Ղամարլուի շրջանի «Փարիզյան Կոմունա» կոլխոզը՝ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՎԽՈԶՆԵՐԸ

Հայաստանի գյուղատնտեսական արտադրության մեջ զգալի տեղ են գրավում նաև սովխոզները, որոնց թիվը ռեսպուբլիկայի մեջ հասնում է 15-ի, որից 5-ը պտղաբուծական և 5-ը խաղողագործական են:

Սովխոզներին ամրացված է 41,9 հազար հեկտար հող, որից վարելահող՝ 2,6 հազար հեկտար, խաղողի այգիներ 2,1 հազար հեկտար, պտղատու այգիներ՝ 3,2 հազար հեկտար, այդ թվում 2000 հեկտարը դեղձի ու ծիրանի այգիներ, իսկ մնացած հողերը ծառայում են իբրև խոտհարքներ ու արոտատեղեր:

Հայաստանի խաղողագործական և պտղաբուծական սովխոզները կազմակերպվեցին 1930—1931 թվականներին՝ Արարատյան հովտի կիսաանապատային տափաստանում:

Այդ սովխոզների այգիները պտղաբերության շրջանը թևակոխեցին փաստորեն 1937 թվից: Իսկ 1940 թվին այդ այգիներից հավաքվեց 1·200 տոննա պտուղ և 2·500 տոննա խաղող:

Այսօր, երբ մենք տոնում ենք Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 20-ամյակը, մեր կոլխոզնիկները հպարտության զգացմունքով հանրագումարի են բերում 20 տարվա ընթացքում անցած ուղին— կուլակության իբրև դասակարգի լիկվիդացիայի ենթարկելու, գյուղատնտեսության կոլեկտիվիզացիայի ու նրա սոցիալիստական վերակառուցման, կոլխոզային կարգերի վերջնական հաղթանակի



և կոլխոզնիկների ունևոր կյանքի ստեղծման ուղին, որովհետև կոլխոզային շինարարության այդ հաջողությունները, ինչպես որ սովետական ժողովրդի մյուս բոլոր հաջողությունները, սերտորեն կապված են ամբողջ աշխարհի աշխատավորության մեծագույն առաջնորդ, մեր ազատարար, հայր ու մեծ բարեկամ՝ ընկեր Ստալինի անվան հետ:

★ ★ ★

# ԿՈՒԼՏՈՒՐԱ ԵՎ ԱՐՎԵՍՏ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՐՎԵՍՏԸ

*Հայ ժողովրդի դարերով կուտակված ստեղծագործական կարողությունները սովետական պայմաններում զարգացման նոր թափ ստացան։ Անցնելով զարգացման երկար և բարդ ուղի, ենթարկվելով դրսից ամենաբազմազան ազդեցությունների, ընկրած՝ հելլենիզմից, իրանիզմից, վերջացրած թուրք-սելջուկական և մոնղոլական արշավանքներով, հայ ժողովրդի արվեստը, այնուամենայնիվ, պահպանել է իր ազգային ոգին և կոլորիտը։*

*Հայաստանում սովետական իշխանության հաստատմամբ հայ ժողովրդի արվեստի պատմության մեջ նոր դարաշրջան բացվեց։ Եղբայրական սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում, որն այս անցած քառորդ դարի ընթացքում ձեռք է բերել կուլտուրայի ասպարեզում խոշոր*



*հաղթանակներ, ստեղծելով նոր, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա, հայ ժողովուրդն այս անցած քսան տարիների ընթացքում արվեստի բնագավառում մեծ նվաճումներ է ձեռք բերել։*

*Այդ զարգացումն ընթացել է համաչափորեն՝ սկսած ժողովրդական ֆոլկլորից, վերջացրած կլասիկ երաժշտությամբ և պարարվեստով։ Երկար տարիների ընթացքում բուրժուական նացիոնալիստների բանակից, բախտի բերումով, կուլտուրական հիմնարկների ու արվեստի ղեկավարության գլուխ կանգնած շատ անուններ ու ֆորմալիստներ քիչ չվնասեցին հայկական արվեստի զարգացմանը։ Նրանք ազգային ձևի տակ ներս էին խցկել կեղծ էտնոգրաֆիզմը, վանել էին ստեղծագործական տաղանդավոր կադրերին։*

*Այդ վնասարարներն սկսել էին գործի դնել կեղծ կլասիցիզմը և վուլգար սոցիոլոգիան։ Մարդիկ այնտեղ էին հասել, որ կարմիր բաճկոններ հագած կանանց բեմի վրա կատարած կիսավայրենի թռիչքները առանց ամոթի հրամցնում էին որպես հայկական էտնոգրաֆիկ պարեր։ Անուշադրության էր մատնված ժողովրդական ստեղ-*

ծաղրծությունը, իսկ հայկական աշուղների և գուսանների փառապանծ պոեզիայի սերունդը—հինալի ժողովրդական երգիչները և իմպրովիզատորները լիովին մոռացության էին տրված: Սակայն, ընկեր Ստալինը 1937 թ. աշնանն իր գրած պատմական նամակում մատնացույց արեց, որ կուլտուրական գործերը Հայաստանում շատ վատ են ընթանում: Ընկեր Ստալինի ցուցումով Հայաստան եկավ նրա լավագույն զինակիցներից մեկը՝ հայ ժողովրդի փառապանծ զավակ ընկ. Անաստաս Իվանովիչ Միկոյանը: Նրա խորհուրդները և ցուցմունքները, նրա օգնությունը կուլտուրայի և արվեստի ասպարիզում, կուլտուրական ֆրոնտի աշխատողները և ողջ հայ ժողովուրդը երբեք չեն մոռանա:

Վերջին տարիներս արվեստի բոլոր ճյուղերի ծաղկման, այն՝ բուրժուական-ազգայնական խեղաթյուրումներից և կեղծկլասիկական շերտավորումներից վճռական մաքրման տարիներ էին: Ստեղծագործական միտքը հորդ աղբյուրի նման բխեց. աճեցին և բազմացան բազմաթիվ տաղանդավոր կադրեր: Բուռն կերպով աճեց ժողովրդական ստեղծագործությունը՝ ինքնա-



գործ արվեստը: Տարեց-տարի լայնացավ թատերական և արվեստի այլ հաստատությունների ցանցը: Այժմ Հայաստանում գոյություն ունեն 350 այդպիսի հաստատություններ, այդ թվում՝ 25 մշտական թատրոն, մեկ օպերայի և բալետի թատրոն, 3 շրջիկ թատրոն, 2 պատանի հանդիսատեսի թատրոն, մեկ կրկես, ավելի քան 240 կինո-թատրոն (այդ թվում 180 հնչուն), մեկ կինո-ստուդիա: Միայն վերջին երեք տարիների ընթացքում կազմակերպված է 3 շրջիկ թատրոն և 40 կինո-թատրոն:

Հայաստանի կոլխոզներում, գործարաններում և ձեռնարկություններում գործում են մոտ 600 ինքնագործ խմբակներ: Ժողովրդական ֆոլկլորի հավաքման և մշակման գծով մեծ աշխատանք է տանում ժողովրդական ստեղծագործության տունը, որը հավաքել և ձայնագրել է մոտ 1000 աշուղական, ժողովրդական երգեր, ինքնուս կոմպոզիտորների գործեր, մոտ 300 հեքիաթ և այլն:

Նվաճումները հատկապես մեծ են երաժշտական արվեստի զարգացման ասպարիզում և այդ պատահական չէ: Հայ ժողովուրդն աշխարհի ամենաերաժշտասեր

ժողովուրդներից մեկն է, նա երաժշտական կուլտուրայի քիչ թվով գործիչներ չի տվել. Կարա-Մուրզա, Մակար Եկմալյան, Կոմիտաս, Սպենդիարյան, անուններ, որոնք լայն հայտնի են ամբողջ երաժշտական աշխարհին։

Այս պլեադայում հատուկ տեղ է գրավում հանճարեղ Կոմիտասը, որը հայկական երաժշտական նոր դպրոցի հիմնադիրն է համարվում։ Մեծ տաղանդը, երաժշտական լայն աշխարհահայացքը, անխզելի կապը ժողովրդական ստեղծագործության աղբյուրների հետ, հնարավորություն տվին Կոմիտասին մի կողմից՝ իր ժողովրդի ինքնուրույն երաժշտական կուլտուրայի խոր արմատները հայտնաբերել, մյուս կողմից՝ ստեղծել երաժշտական ստեղծագործության սքանչելի գործեր։ Կոմիտասի անվան վաստակավոր կվարտետը մեծ հռչակ ունի ողջ Միության մեջ։

Զգալիորեն աճել են դրամատիկական թատրոնները, որոնց մեջ հատուկ տեղ է գրավում Սունդուկյանի անվան թատրոնը, որն իրավացիորեն հպարտանում է իր արտիստների բարձր կատարողական արվեստով։ Նա վերջին տարիներս պատմական և ժամանակակից պիեսների բեմադրության



գործում մեծ հաջողություններ է ձեռք բերել, որոնք պատկերում են մեկ կողմից՝ հայ ժողովրդի ազատագրական հերոսական պայքարը, մյուս կողմից՝ սոցիալիստական հիանալի ներկան, մեր պարտիայի մեծ առաջնորդներ՝ Լենինի ու Ստալինի և նրանց զինակիցների կերպարները։

Հիանալի հաջողություններ ունեն Հայաստանի նկարիչները։ Կերպարվեստը բարձրացել է զարգացման նոր աստիճանի։ 1939—40 թ. թ. կազմակերպված սովետական նկարիչների ցուցահանդեսը մեծ հաջողություն ունեցավ ինչպես Երևանում, այնպես էլ Մոսկվայում և Լենինգրադում։

Զարգացման բարձր աստիճանի է հասել թանգարանային գործը։ Թանգարանները պրիմիտիվ պահեստներից դարձել են բարձր կուլտուրական հիմնարկներ (Պատմական թանգարանը, Կերպարվեստի թանգարանը և այլն)։

Հայաստանի արվեստի ասպարեզում ձեռք բերված նվաճումները ցուցադրվեցին Մոսկվայում 1939 թ. Հայկական արվեստի տասնօրյակի ժամանակ։ Այդ ոչ միայն մեծ տոն էր, այլև առաջին մեծ քննությունը։ 1939 թ. հոկտեմբերի 20-ին բարձրացավ Սովետական Միության Մեծ

թատրոնի վարպետները և այնուհետև ամբողջ տասնօրյակի ընթացքում Հայկական պետական օպերայի և բալետի ու Ֆիլհարմոնիայի կոլեկտիվները՝ մեր արտիստները, կոմպոզիտորները, նկարիչները, դիրիժորները և արվեստի այլ աշխատողները ցուցադրեցին իրենց հիանալի վարպետությունը, բեմադրությունների գեղարվեստական ձևավորումը և երաժշտական ու երգեցիկ խմբերի կատարողական վարպետությունը, արժանանալով սովետական արվեստի ամենաականավոր ներկայացուցիչների գովասանքին:

Տասնօրյակի կապակցությամբ «Պրավդան» գրեց.

«Հայ ժողովրդի երազը կատարվեց: Ժողովրդական մասսաներում կուտակված հզոր ուժերը գտան ելք և օգտագործում: Խնամքով պահպանելով անցյալի կլասիկ արվեստի հուշարձանները, հայ ժողովուրդն ստեղծում է իր նոր, հիասքանչ արվեստը»:

Հայկական արվեստի տասնօրյակը կառավարության և պարտիայի կողմից մեծ գնահատականի արժանացավ: Պետական օպերայի և բալետի թատրոնն արժանացավ Սովետական Միության բարձրագույն



պարգևին՝ Լենինի շքանշանին: Հայֆիլհարմոնիան պարգևատրվեց «Աշխատանքային Կարմիր դրոշ»-ով: Սովետական Միության շքանշաններով և մեդալներով պարգևատրվեցին տասնօրյակի 134 մասնակից:

Այդ հաջողություններով ոգեշնչված՝ հայկական արվեստի աշխատողները տասնօրյակից հետո, անցած մեկ տարում, ցուցադրեցին ստեղծագործական աշխատանքի նոր նմուշներ: Բեմադրվեցին ռուս կլասիկների նոր գործեր, ինչպես՝ «Թագավորի հարսնացուն», «Պիկովայա դամա», «Կարապի լիճը»: Սեզոնի սկզբում մեծ հաջողությամբ բեմադրվեց Վերդիի «Ռիգոլետտո»-ն:

Ներկայումս արվեստի աշխատողների կոլեկտիվն աշխատում է նոր բեմադրությունների վրա: Տասնօրյակից հետո նոր մեծ հաջողություններ ունեցավ Հայֆիլհարմոնիան: Պարի և երգի անսամբլի, կապելլայի և ջազի գաստրոլները Սովետական Միության քաղաքներում ամենուրեք մեծ գնահատականի էին արժանանում: Այդ անցած տարում մեր կոմպոզիտորները տվել են մոտ զանազան ժանրի 100 գործեր, նկարիչները և քանդակագործները տվեցին մի շարք նոր գործեր, որոնք զարդարում

են Հայաստանի սովետական նկարիչների ցուցահանդեսի սրահները։

Խնամքով պահպանելով և քննադատորեն յուրացնելով անցյալի կուլտուրայի հարուստ ժառանգությունը, հայ ժողովուրդն այս քսան տարիների ընթացքում ստեղծել է նոր սովետական արվեստ՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական։

Այդ հաջողությունները ձեռք բերվեցին շնորհիվ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության։





## ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՄԱՄՈՒԼ

Սովետական իշխանությունը լայն հնարավորություններ ստեղծեց մեր գրականության բուռն վերելքի ու զարգացման համար։

Ազատագրված ժողովրդի արագ թափով բարձրացող կուլտուրական մակարդակը հրամայաբար պահանջեց մեր գրողներից նոր, բարձրորակ ստեղծագործություններ։ Եվ ահա, մեր գրողները, շրջապատված լինելով պարտիայի և կառավարության ամենօրյա հոգատարությամբ, անցած երկու տասնամյակներում ստեղծեցին մի շարք արժեքավոր գործեր։

Սովետական ընթերցողների լայն մասսային իրենց ստեղծագործություններով հայտնի են այնպիսի գրողների անունները, ինչպիսիք են՝ Դ. Դեմիրճյանը, Ստ. Զորյանը, Արազին, Մ. Մանվելյանը, Ն. Զարյանը, Սիրասը և վերջին մեկ տասնամյակում աճած մի շարք այլ երիտասարդ գրողներ ու բանաստեղծներ։

Մեր գրողների թեմատիկան բազմազան

է: Նրանք երգում են մեր ժողովրդի անցյալը, քաղաքացիական հերոսական կռիվների տարիները, բայց նրանց երգի լեյտմոտիվը մեր այսօրն է—սովետական լուսաշող կյանքը:

Այդ կյանքն են երգում նաև մեր ժողովրդական աշուղները, այն աշուղները, որոնց նախորդները հին դարերում ստեղծեցին հայ ժողովրդի հերոսավեպը՝ «Սասունցի Դավիթ»-ը, որի հազարամյակը մեծ հանդիսավորությամբ տոնեցինք մենք անցյալ տարի:

Նշանակալից հաջողությունների ենք հասել մենք հրատարակչական գործի բնագավառում, անցած երկու տասնամյակները հայ գրքի հրատարակման համար աննախընթաց տարիներ էին:

1921 թվի հունիսի 8-ի կառավարության հատուկ դեկրետով հիմք դրվեց Պետական հրատարակչությանը: Պարտիայի և կառավարության բացառիկ հոգատարության շնորհիվ, Պետական հրատարակչությունը տարեց-տարի ընդլայնեց իր գործունեությունը: Սկսվեցին հրատարակվել մայրենի լեզվով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը, համաշխարհային գրողների նշանավոր գործերը, ինչպես նաև հայ



անցյալի և ժամանակակից գրողների ստեղծագործությունները:

Հրատարակչական աննախընթաց աճի մասին են խոսում հետևյալ թվերը· եթե 1921 թ· հրատարակված էր ընդամենը 10 անուն գիրք, 57,5 տպագրական մամուլի ծավալով և 21·600 օրինակ տիրաժով, ապա 5 տարի հետո, 1925 թ· հրատարակվեց 56 անուն գիրք 325 տպագրական մամուլով, 350,4 հազար տիրաժով: Հրատարակչական գործն իր նոր վերելքն է ապրում հետագա տարիներին· 1930 թ· հրատարակված էր 359 անուն գիրք, 1·701 տպագրական մամուլով, 1207,7 հազար տիրաժով, 2 տարի անց, 1932 թ· հրատարակվեց 502 անուն գիրք, 2156,9 տպագրական մամուլով, 2681,5 հազար օրինակ տիրաժով:

Առանձնապես մեծ է աճը 1937 թվից հետո, երբ Հայաստանի բոլշևիկները, ընկեր Ստալինի ցուցումներով և ընկ· Միկոյանի անմիջական օգնությամբ, ինչպես ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում, այնպես էլ հրատարակչական գործի ֆրոնտում լիկվիդացիայի ենթարկեցին ժողովրդի թշնամիների վնասարարության հետքերը:

1938 թվին 1937 թվի համեմատությամբ

միայն Պետհրատի գծով գրքի հրատարակումն աճել է 51 տոկոսով, 1940 թ.՝ 16,3 տոկոսով և այլն:

Մեծ աշխատանք է կատարված մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի հրատարակման ուղղությամբ:

1921—33 թ. թ. հրատարակված է 57 անուն գիրք, 431·000 տիրաժով, 1933—37 թ. թ. 433 անուն՝ 4·395·000 իսկ 1938—40 թ. թ. 300 անուն՝ 3·040·000 տիրաժով:

Այժմ հայ ընթերցողն իր մայրենի լեզվով կարողանում է կարդալ Կ. Մարքսի «Կապիտալ»-ը, Ֆ. Էնգելսի «Անտի-Դյուրինգ»-ը, «Բնության դիալեկտիկան», Լենինի 1, 3, 6, 8, 13, 22, 24, 27-րդ հատորները, Ստալինի՝ «Լենինիզմի հարցերը» և մարքսիզմի կլասիկների բազմաթիվ այլ գործերը:

Հայերեն հրատարակված են համաշխարհային գրականության կլասիկների մի շարք երկերը, այդ թվում՝ Շեքսպիրի, Ֆլոբերի, Հյուգոյի, Մոպասանի, Ժյուլ Վեռնի, Պուշկինի, Տոլստոյի, Չեխովի, Գորկու, Մայակովսկու և այլ գրողների գործերը:

Քաղաքական ու գեղարվեստական գրքե-



րից բացի, մենք վիթխարի տիրաժներով հրատարակել ենք նաև մանկա-պատանեկական, պաշտպանական, տեխնիկական, գիտական հարցերին նվիրված բազմաթիվ գրքեր:

Հայ տպագիր գրքի պատմության ավելի քան 400 տարվա գոյության ընթացքում այնքան գրականություն չի հրատարակվել, ինչքան անցած երկու տասնամյակում: Եթե 1512 թ. մինչև 1920 թ. հրատարակված է եղել 3,719 անուն գիրք, ապա 1921 թ. հետո միայն Պետհրատը հրատարակել է 5·219 անուն, որը կազմում է սովետական տարիների հրատարակչական արտադրանքի 40 տոկոսը:

Պետհրատից և Պարտհրատից բացի, Հայկական ՍՍՌ-ում կան նաև մի շարք այլ հրատարակչություններ, որոնք նույնպես ունեն տպագրական ամուր բազա: Հիշատակման արժանի են ԱՐՄՖԱՆԻ, Լուսհրատի, Պետհամալսարանի, Մանկ. ինստիտուտի և այլն հրատարակչությունները: Այդ բոլոր հրատարակչությունները քսան տարվա ընթացքում հրատարակել են ավելի քան 650 անուն գիրք խոշոր աշխատություններ,

չհաշվելով բազմաթիվ փոքրածավալ գըրքեր: Հսկայական չափերով աճել է նաև մեր պարբերական մամուլը: 1913 թ. 6 թերթի փոխարեն այժմ մենք ունենք 62 թերթ, որից 46-ը հայերեն, իսկ մյուսները ռուսերեն և ադրբեջաներեն և երկու ժուռնալի փոխարեն՝ 16-ը:





# ՄԵՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՖՐՈՆՏՈՒՄ

Նախքան Սովետական իշխանության հաստատումը, ուսուցման ու լուսավորության գործը գտնվում էր անմխիթար դրության մեջ, իսկ դաշնակցական տըխրահռչակ կառավարության տիրապետության տարիներին եղած դպրոցների գերակշռող մեծամասնությունը փակվել էր: 1918—19 թ.թ. Հայաստանում գործում էին միայն 156 դպրոց՝ 18.600 աշակերտով, որ սովորում էին հարուստների երեխաները: Հայ ժողովուրդը տնքում էր սեփական և օտար թշնամիների հասցրած վերքերից:

Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո, ինչպես արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը, այնպես էլ կուլտուրան սկսեց արագ կերպով զարգանալ, առաջացան գիտական նոր հաստատություններ, դպրոցական լայն ցանցով ծածկվեց ռեսպուբլիկան:

Մեր դպրոցներում քսան տարվա ընթացքում դաստիարակվել են արդեն մի քանի սերունդներ, որոնք աշխատում են սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում:

Հայաստանում սովետական իշխանության հաստատվելու սկզբնական տարիներին դեռ հնարավորություն չկար դպրոցական հասակի բոլոր երեխաներին ընդգրկել դպրոցներում, բայց մի քանի տարի հետո՝ երկրի դպրոցական հասակի համարյա բոլոր երեխաներն արդեն ընդգրկվեցին դպրոցներում:

Այժմ ոչ միայն աճել է աշակերտության թիվը, այլև ավելի է կանոնավորվել ուսման գործը մեր դպրոցներում. բարձրացել է միջնակարգ դպրոցների տեսակարար կշիռը: 1940—41 թ.թ. ուսումնական տարում ռեսպուբլիկայի 1.154 դպրոցներից միայն 243-ն են տարրական, իսկ մնացածները՝ միջնակարգ և ոչ-լրիվ միջնակարգ:

Մասսայական դպրոցներում 1940—41 ուստարում սովորում են ավելի քան 326.617 հոգի: Միայն լրիվ միջնակարգ դպրոցներում այս տարի սովորում են 192.207 աշակերտ. բացի դրանից, 20.000



հոգի սովորում են մեծահասակների միջնակարգ դպրոցներում, ուսումնարաններում ու տեխնիկումներում: Միջնակարգ դպրոցներ են կառուցվել ոչ միայն շրջանային կենտրոններում, այլև այնպիսի գյուղերում, ուր առաջ դպրոց չկար: Ահա դրանցից մի քանիսը. Կալինինոյի շրջանի Շահնազար գյուղը նախքան սովետական իշխանության հաստատումը դպրոց չի ունեցել, բայց այժմ նա ունի երկու միջնակարգ դպրոց, ուր սովորում են 1.400 աշակերտ. ուսուցիչների կեսից ավելին բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեն: Այդ դպրոցներն ունեն ֆիզիկական, քիմիական, աշխարհագրական և այլ կաբինետներ ու լաբորատորիաներ:

Ստեփանավանի շրջանի Բերդ գյուղում, որտեղ 1921 թ. չէր ճարվում մի գրագետ մարդ՝ գյուղսովետի քարտուղար նշանակելու համար, այժմ գոյություն ունի ոչ լրիվ միջնակարգ դպրոց իր բոլոր հարմարություններով: Գյուղում ոչ մի անգրագետ չկա, գյուղից շատ երիտասարդներ արդեն բարձրագույն կրթություն ունեն և աշխատում են սոցիալիստական շինարարության տարբեր բնագավառներում: Կալինինոյի շրջանի Իրմաղլու ադրբեջանական

գյուղն այն բազմաթիվ գյուղերից մեկն է, ուր նախահեղափոխական շրջանում ոչ միայն դպրոց, այլև գրագետ մարդ չի եղել: Սովետական իշխանության շնորհիվ, Իրմաշլուն դարձել է մեր առաջավոր գյուղերից մեկը և այժմ ունի միջնակարգ դպրոց, որը տեղավորված է նոր և գեղեցիկ շենքում: Դպրոցում սովորում են մոտ 300 աշակերտ: Դպրոցն ունի բոլոր հարմարությունները— լաբորատորիաներ, կաբինետներ և այլն: Գյուղի դպրոցը շրջանի առաջավոր դպրոցներից է. մի քանի տարի է, ինչ երկրորդ տարեցի չի տվել:

Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղն առաջ ուներ մի փոքրիկ դպրոց, ուր սովորում էին 20—30 աշակերտ: Այժմ Ուզունլարում կազմակերպվել է լրիվ միջնակարգ դպրոց, որտեղ 1939 թ. սովորում էին 1270 հոգի: Դպրոցն ունի գեղեցիկ, նորակառույց, երկհարկանի շենք, մի քանի լաբորատորիաներ ու կաբինետներ, ապահովված է էլեկտրական լուսավորությամբ, ունի կինո-ապարատ, մոգական լապտեր և այլ հարմարություններ: Դպրոցի ֆիզկուլտ դահլիճը և պիոներական ակումբն ունեն բոլոր անհրաժեշտ կահ-կարասիները և սարքավորումները: Դպրոցի ուսուցչու-



թյունը հսկայական կուլտուրական աշխատանք է տանում գյուղում: Գյուղի ազգաբնակչությունը համարյա թե լրիվին գրագետ է դարձել, ոչ միայն գյուղը, այլև դպրոցն ունեն իրենց առանձին բաղնիքը:

Ծովագյուղը, նախկին Չիբուխլուն, այն գյուղերից է եղել, որը տնքացել է դարավոր աղքատության և խավարի մեջ: Այժմ գյուղում կա լրիվ միջնակարգ դպրոց, որն ունի նոր շենք, 11 ուսուցիչ և 550-ից ավելի աշակերտ: Հայաստանի յուրաքանչյուր շրջան առանձին վերցրած, նույնպես խոշոր նվաճումներ է ձեռք բերել: Այդ շրջաններից վերցնենք թեկուզ Կիրովականի, Արթիկի շրջանները: Կիրովականի շրջանում կան 12 միջնակարգ, 17 ոչ-լրիվ միջնակարգ դպրոցներ և մեկ մանկավարժական ուսումնարան. այդ դպրոցներում սովորում են 10·000 աշակերտ, աշխատում են 377 ուսուցիչ:

Արթիկի շրջանն ունի 6 տարրական, 19 ոչ-լրիվ միջնակարգ և 6 լրիվ միջնակարգ դպրոց, որոնցում սովորում են 9·051 աշակերտ, չհաշված նախադպրոցական ցանցում, մանկապարտեզներում ընդգրկվածները:

Այդ երկու շրջաններում սովորող աշա-

կերտների թիվը գերազանցում է դաշնակցական Հայաստանի դպրոցներում ընդգրկված բոլոր աշակերտների թվին։

## ԿԱԴՐԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Եթե մի քանի տարի առաջ մեր մի շարք շրջանների դպրոցներում բարձրագույն կրթության տեր ուսուցիչներ չկային և միջնակարգ դպրոցներ ավարտողներից շատերն իրենց դպրոցներում աշխատում էին որպես դասատուներ, ապա 1939—40 ուս. տարվանից այդ պրակտիկային վերջ է տրվել։ Միջնակարգ դպրոցների բարձր դասարանները այժմ ապահովված են բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեցող ուսուցիչներով։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը, բարձր գնահատելով ժողովրդական ուսուցչի աշխատանքը, Հայաստանի գյուղական ամենաառաջավոր ուսուցիչներից 52 հոգու պարգևատրեցին Սովետական Միության շքանշաններով և մեդալներով։ Լենինի շքանշանով պարգևատրվել են մանկավարժական գործի վարպետներ ընկ. ընկ. Սիմակը, Մարիամ Գրիգորյանը, Կլավդիա Բոբրովան, Հայկանուշ Պողոսյանը։ Հայկական ՍՍՌ ժողկոմսովե-



տի որոշմամբ քսան ուսուցիչ, իրենց երկարամյա արդյունավետ մանկավարժական աշխատանքի համար, վաստակավոր ուսուցչի կոչում են ստացել։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և քաղաքային, ռայոնական ու գյուղական սովետներում դեպուտատ են ընտրված 414 ուսուցիչ։ Մենք ունենք հարյուրավոր առաջավոր ուսուցիչներ, որոնք ուսման բարձր ցուցանիշներ են տվել, ինչպես օրինակ՝ Լենինականից՝ Դ. Նոնյանը, Ղամարլուից՝ Արուս Ղազարյանը, Ն. Բայազետից՝ Ար. Ղազանջյանը, Երևանի Պուշկինի անվան դպրոցից՝ Ռուժանսկայան և ուրիշները։

## ՄԵՐ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ՏԻՐԱՊԵՏՈՒՄ Է ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԼԵԶՎԻՆ

Դպրոցական աշխատանքի մեջ ամենաթույլ օղակը ռուսաց լեզվի դասավանդումն է եղել։ Պարտիայի և կառավարության 1938 թ. որոշումից հետո՝ «ռուսաց լեզվի դասավանդումը ոչ-ռուսական դպրոցներում բարելավելու մասին», Հայկական ՍՍՌ դպրոցներում դրությունն զգալի չափով բարելավվեց։ Դպրոցներն ապահովվեցին ռուսաց լեզվի որակյալ դասատուներով։ Մեր ռեսպուբլիկայի դպրոցներում 1937 թ.

կար 470 ռուսաց լեզվի դասատու, իսկ 1939—40 ուստարում՝ 1.295, որոնցից մեծ մասը մանկավարժական կրթություն ունեն։ Ռուսաց լեզվի դասատուների որակը բարձրացնելու համար գոյություն ունի ռուսական 3 մանկավարժական ուսումնարան և Երևանի ռուսական մանկավարժական ինստիտուտը՝ իր հեռակա ցանցով։ Հայաստանի Պետհամալսարանի Ֆիլոլոգիական ֆակուլտետն ունի ռուսաց լեզվի և գրականության բաժին, որը տալիս է բարձրորակ կադրեր, ինչպես մեր դպրոցների, նույնպես և գիտա-հետազոտական հիմնարկների համար։

## ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սովետական իշխանության հաստատումից առաջ Հայաստանում չկային բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատությունները կազմակերպվել են միայն սովետական իշխանության օրոք, տալով մեր երկրին բազմակողմանիորեն զարգացած գիտական-հասարակական աշխատողներ և բարձրագույն կրթություն ունեցող ուսուցիչներ։

Հայաստանում այժմ գոյություն ունի 10 ԲՈՒՀ, ինչպես՝ Պետական համալսարա-



նը, Հայկական Մանկավարժական ինստիտուտն իր հեռակա բաժիններով, Ռուսական Մանկավարժական ինստիտուտը, Երևանի և Լենինականի Երկամյա ուսուցչական ինստիտուտները և այլն։ Մեր ԲՈՒՀ-երը տարեց-տարի ավելի ու ավելի մեծ թվերով կադրեր են տալիս դպրոցներին։ Միայն 1938—39 և 1939—40 ուսումնական տարիներում Հայկական ՍՍՌ-ն ստացել է ԲՈՒՀ-երից բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեցող 1.355 մանկավարժ։ Անհամեմատ չափով աճել է ԲՈՒՀ-երի ուսանողության թիվը. 1928—29 ուս. տարում ԲՈՒՀ-երում և ԲՏՈՒՀ-ներում սովորում էին 1.366 մարդ, իսկ 1939—40 տարում՝ 7.426 մարդուց ավելի։ Մեր ԲՈՒՀ-երում, առանձնապես ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1938 թ. նոյեմբերի 14-ի որոշումից հետո, նոր բարձրության հասցվեց մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդան. բոլոր ԲՈՒՀ-երում 1938—39 ուս. տարվանից սկսած՝ գործում են մարքսիզմ-լենինիզմի կաֆեդրաները և կաբինետները, որոնք մեծ չափով օգնում են ուսանողությանը՝ մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրելու։

Լուսավորության ժողկոմատի ցանցում մտնում են 14 ուսումնարան, որոնք պատրաստում են ուսուցչական կադրեր մեր տարրական դպրոցների համար: Միայն 1939—40 ուս. տարում մեր ուսումնարանները տվին 1100 շրջանավարտ:

Բացի դրանից, աճել է և տեխնիկումների թիվը. օրինակ՝ 1928—29 թ. թ. կար 13 տեխնիկում 1·852 ուսանողներով, իսկ 1939—40 ուս. տարում այդ թիվը հասել է 68-ի՝ 11·008 ուսանողներով:

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Սովետական իշխանությունը միայն վերջին 3 տարիների ընթացքում (1937—40 թ. թ.) կառուցել է 166 դպրոցական նոր շենք, որոնցից 141-ը՝ գյուղական վայրերում: Այդ դպրոցների կառուցման վրա ծախսվել է 55 միլիոն ռուբլուց ավելի: Դպրոցական հաջող շինարարությունը հնարավորություն ստեղծեց բոլոր դպրոցներում երրորդ հերթի պարապմունքները լիկվիդացիայի ենթարկել: Վերջին տարիներում կառուցված դպրոցների մեծ մասը միջնակարգ դպրոցներ են:



## ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԻԶՈՒՄ

Մանուկներին կոմունիստական դաստիարակություն տալու գործում մեծ դեր են խաղում նաև մանկապարտեզները: Եթե 1919—20 թ. թ. Հայաստանում կային միայն 2 մասնավոր մանկապարտեզ՝ 152 երեխաներով, ապա 1939 թվին Սովետական Հայաստանում գործում էին 367 մանկապարտեզ՝ 16·954 երեխայով: Նախադպրոցական հիմնարկների պահպանման համար, միայն Լուսժողկոմատի գծով 1939 թ. հատկացված էր 6·077 հազար ռուբլի, իսկ 1940 թ.՝ 8·449 հազար:

1938—39 թ. թ. դպրոցական ցանցի համար Լուսժողկոմատի գծով կառուցվել է 22 նոր շենք: Դրա հետ միասին դպրոցներն ստացել են ժամանակակից գիտության պահանջները բավարարող բազմաթիվ դասագրքեր, որոնք հազարավոր օրինակներով են լույս տեսնում և հազիվ կարողանում են բավարարել մեր աշակերտության պահանջը: Նախքան սովետական իշխանության հաստատումը, հայկական դպրոցների

համար հրատարակված ամենամասսայական և մեծ տիրաժ ունեցող դասագիրքը Դ. Աղայանի կազմած այբբենարանն է եղել, մինչդեռ այդ այբբենարանը երբեք 8.000 տիրաժից ավելի չի հրատարակվել: Այժմ մեր տարրական դպրոցների յուրաքանչյուր դասագիրքը հրատարակվում է շուրջ 50.000 տիրաժով և այն էլ ամեն տարի:

Ժողովրդական կրթության գործը Հայաստանում, ինչպես Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաներում, տարեց-տարի ընդարձակվում ու լայնանում է: Հայ ժողովրդի ոխերիմ թշնամիները՝ դաշնակցական, նացիոնալիստական թափթըփուկները, որոնք խցկվել էին ժողլուսավորության ցանցում, ամեն կերպ ձգտում էին ձախողել մեր մատաղ սերնդի, մեր ապագայի դաստիարակության ու կրթության գործը:

Մեր սիրելի առաջնորդ մեծ Ստալինի իմաստուն ղեկավարությամբ և օգնությամբ, Հայաստանի բոլշևիկները մերկացրին ու ոչնչացրին ժողովրդի թշնամիներին և ամուր հիմքերի վրա դրին երիտասարդության կոմունիստական դաստիարակության ու կրթության գործը:



Մեր մատաղ սերունդն աճում ու դաստիարակվում է բոլշևիկների պարտիայի և նրա Կենտկոմի, մանուկների ամենասիրելի բարեկամ մեծ Ստալինի հոգատարությամբ շրջապատված:



# ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Սոցիալիստական շինարարության մեծ նվաճումներին զուգընթաց, քսան տարվա ընթացքում խոշոր հաջողություններ են ձեռք բերված նաև առողջապահության ֆրոնտում: Այդ հաջողությունները վիթխարի են, եթե համեմատենք մինչ ռևոլյուցիոն Հայաստանի բժշկական գործի դրության հետ: 1912 թ. Նախկին Երևանի նահանգում ազգաբնակչության մեկ հոգու վրա պետությունը ծախսել է լուսավորության գծով՝ 36 կոպեկ, առողջապահության գծով (անասնաբուժական, սանիտարական ծախսերի հետ միասին)՝ 25 կոպեկ, իսկ իրավակարգի պահպանման գծով (ոստիկանություն, բանտ և այլն) 5 ռ. 85 կ.: Էլ ի՞նչ առողջապահության մասին խոսք կարող էր լինել, երբ ազգաբնակչության մեկ հոգուն ընկնող չնչին 25 կոպեկ գումարից դեռ ահագին մի մաս գնում էր անասնաբուժական-սանիտարական հսկողության համար:

1913 թ., առաջին իմպերիալիստական



պատերազմի նախօրյակին, առողջապահության ճյուղերից գոյություն ուներ միայն ընդհանուր բժշկական օգնությունը, իսկ սանիտարական և պրոֆիլակտիկ գործերին ոչ մի ուշադրություն չէր դարձվում: Այդ ժամանակաշրջանում Հայաստանի տերիտորիայում գործում էին միայն 15 հիվանդանոց՝ 212 մահճակալով, 16 ամբուլատորիա (գլխավորապես՝ մերձհիվանդանոցային), 13 ֆելդշերական և 2 ախտահանական կայաններ: Այդ հիմնարկներին սպասարկում էին 38 բժիշկ և 83 հոգի միջին բուժպերսոնալ: Դաշնակների տիրապետության օրոք բժշկական սպասարկման գործն ամենավատթար պատկերն էր ներկայացնում:

Սովետական իշխանությունը հսկայական ու համառ աշխատանք է տարել ազգաբնակչության արագ աճման ուղղությամբ, ստեղծելով բարեկեցիկ պայմաններ. եթե 1924 թ. ազգաբնակչության մեկ հազարին ընկնող աճը հավասար էր 28,8 մարդու, ապա 1937 թ. բարձրացավ մինչև 33,7 մարդու: Մահացության թիվը նույն տարիների ընթացքում 18,9 մարդուց իջավ մինչև 13,1-ի: Հատկապես խոշոր աշխատանք է տարված երեխաների մահացության թվի իջեցման գործում: Կազմակերպված են ման-

կամսուրներ, կոնսուլտացիաներ, ծննդին օգնող հիմնարկություններ և հատկապես կոլխոզային ծննդյան տների լայն ցանց: 1939 թ. վերջում ռեսպուբլիկայում կար 45 մանկական կոնսուլտացիոն կայան, երեխաների կաթ մատակարարող 9 խոհանոց, 101 մշտական մսուր 4.136 մշտական տեղով և մոտ 700 սեզոնային մսուրներ գյուղում՝ 16.209 մշտական տեղով:

Դաշնակների տիրապետության օրոք սիստեմատիկաբար հնձող խոլերայի դաժան համաճարակը վերացված է դեռ 1921 թ.: Վերացված են վերջնականորեն բնական ծաղկի հիվանդության դեպքերը, սկսած 1935 թ. այդպիսի և ոչ մի դեպք չի արձանագրված: Մինիմումի են հասցված տիֆային հիվանդությունները, ընդ որում անդրադարձ տիֆն ամբողջովին վերացված է: Կազմակերպվել են հակամալարիային հիմնարկությունների լայն ցանց (Տրոպիկական ինստիտուտի ղեկավարությամբ), որն մալարիայի— աշխատավոր ժողովրդի այդ դարավոր թշնամու, վերացման գործում մեծ նվաճումներ է ձեռք բերել:

Ժողովրդական առողջապահությանը տարեց-տարի աճող հսկայական գումարներ են բաց թողնվում: Այսպես օրինակ՝ 1937 թ.



բաց է թողնվել 51.920,2 հազար ռուբլի, 1939 թ.՝ 54.640,3 հազար ռուբլի, իսկ 1940 թ.՝ 64.970,0 հազար ռուբլի:

Առողջապահության բյուջեի աճին համապատասխան աճել է ռեսպուբլիկայի բժշկապրոֆիլակտիկ ձեռնարկների ցանցը: Առ 1940 թ. հունվարի մեկը Հայաստանում կան 88 հիվանդանոցային հիմնարկ 3.734 մահճակալով, 25 ծննդյան տուն 581 մահճակալով, բժշկա-ամբուլատորային օգնության 227 հաստատություն, որոնց թվում 29 մանկադիտական պոլիկլինիկա, կանանց և մանկական 45 կոնսուլտացիոն կայան, 32 մալարիայի և 211 ֆելդշերական կայաններ և այլն:

Ժողովրդական առողջապահության ասպարեզում մեծ պրակտիկ օգնություն են ցույց տալիս սովետական իշխանության օրոք կազմակերպված գիտա-հետազոտական բժշկական հիմնարկները— Երևանի Տրոպիկական ինստիտուտը, Սանիտարա-բակտերիոլոգիական ինստիտուտը և այլն: Այժմ Երևանում կա 8 գիտա-հետազոտական բժշկական հիմնարկ, որոնք տվել են 600 գիտական աշխատանք. դրանցից 282-ը տպագրված են միութենական զանազան բժշկական ժուրնալներում:

Սովետական իշխանության քսան տարիների ընթացքում կուրորտային կապիտալ շինարարության մեջ ներդրվել են 15·826 հազար ռուբլի: Այժմ գործում են Դիլիջանի և Նորքի կուրորտները՝ թոքախտավորների համար և Արզնու ու Ջերմուկի բալնեոլոգիական կուրորտները: Բացի այս գործող կուրորտներից, որոնք շահագործվում են Առժողկոմատի կողմից, կան այլ կուրորտներ ու բուժավայրեր, որոնք շահագործվում են այլ հիմնարկների կողմից (Գյուլագարակ, Սևան, Ծաղկաձոր, Կիրովական, Ախթալա և այլն):

Սովետական իշխանության քսան տարիներին Երևանի Բժշկական ինստիտուտը պատրաստել է 861 բժիշկ, իսկ միջին բժշկական դպրոցներն ավարտել են 1·792 մարդ, որոնցից 165 ատամնաբույժ, 138 դեղագործ, 300 ֆելդշեր, 532 բժշկական քույրեր և 657 մանկաբարձներ: Ներկայումս Հայաստանում աշխատում են 847 բժիշկներ և մոտ 2·000 հոգի միջին բուժպերսոնալ:





Ահա այն հաջողությունների կարճ թվարկումը, որոնք ձեռք է բերել Հայաստանի աշխատավորությունը սովետական իշխանության գոյության այս քսան տարում: Հայ ժողովրդի ավելի քան երկու հազար տարի ունեցող պատմությունը երբեք չի տեսել զարգացման այդպիսի տեմպեր և այդպիսի օգնություն, որն ունեցել է և ունի սովետական իշխանության օրոք:

Այդ բոլորը հնարավոր է եղել ու դարձել է ռեալ իրականություն, շնորհիվ այն բանի, որ Հայաստանը կանգնած է սովետական իշխանության կարմիր դրոշի ներքո, ապրել ու ամրացել է Սովետական Միության համերաշխ ընտանիքում, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ: Նա աճել, զարգացել ու դարձել է անառիկ ամրոց, որովհետև աշխատել է բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, ՀամԿ(բ)Պ ԿԿ-ի և անձամբ ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարությամբ:

Անհրաժեշտ է մի անգամ ևս հիշեցնել ընկեր Ստալինի հանճարեղ խոսքերը. «Թող գիտենան բոլորը, ով պետք է գիտենա, որ այսպես կոչված՝ հայկական «պրոբլեմը», որի վրա ապարդյուն կերպով գլուխ էին ջարդում իմպերիալիստական դիպլոմատիայի հին գայլերը, լուծելու կարողություն ունեցավ միայն սովետական իշխանությունը:

Կեցցե՛ սովետական Հայաստանը»:

Իմպերիալիստական երկրորդ պատերազմն արագ թափով ծավալվում է, նա սպառնում է վերածվել պատերազմի Սովետական Միության դեմ:

Սահմանամասերից մեկը, որտեղից իմպերիալիստական գիշատիչները կարող են ձեռք բարձրացնել մեր սրբազան հայրենիքի սահմանների վրա,— դա Սովետական Հայաստանի սահմաններն են: Գտնվելով իմպերիալիստական աշխարհին սահմանակից, հայ ժողովուրդը երբեք չի մոռանում ընկեր Ստալինի ցուցմունքը՝ ամեն պատահականության մշտապես պատրաստ լինելու մասին:



Նա յուրաքանչյուր րոպե պատրաստ է սովետական կառավարության և ընկեր Ստալինի հենց առաջին կոչին, Սովետական Միության ժողովուրդների հետ ձեռք-ձեռքի տված, սիրելի և հզոր Բանվորագյուղացիական Կարմիր Բանակի հետ մեկտեղ, չշմեցուցիչ հարված հասցնել յուրաքանչյուր թշնամու և ոչնչացնել նրան հենց իր սեփական տերիտորիայում:

---

Պատասխանատու խմբագիր՝
Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սրբագրիչ՝ Հ. ԶՐԱԴԱՅՊԱՆՅԱՆ

ՎՖ 2476
*Պատվեր՝* № 1001, *Տիրաժ՝* 10·000
*Հանձնված է արտադրության* 10/*XI* 1940 *թ.*
*Ստորագրված է տպագրության* 14/*XI* 1940 *թ.*

---

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի
և ամսագրերի տպարան, Երևան